ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

Մ.

# ՉՈՐՍ ՀԱՅ ՏԱՂԱՍԱՑՆԵՐ ԵՒ ԱՆՈՆՑ ՏԱՂԵՐԸ

ՅՈՎՀԱՆՆԷՍ ԿԱՐՆԵՑԻ, ԳՐԻԳՈՐ ԱՐՔԵՊ. ՕՇԱԿԱՆՑԻ, ՄՈՎՍԷՍ ԴՊԻՐ ԿԱՐՆԵՑԻ ԵՒ ՄԱՐՏԻՐՈՍ Վ. ՂՐԻՄԵՑԻ

ԳՐԵՑ ԵՒ ՀՐԱՏԱՐԱԿԵՑ
ԴԿՏ. Հ. ՀԱՄԱԶԱՍՊ ՈՍԿԵԱՆ
ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ

ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1966

# VIER ARMENISCHE VOLKSDICHTER UND IHRE GEDICHTE

JOHANNES KARNEC'I, ERZBISCHOF GREGOR OŠAKANC'I, MOSES KARNEC'I UND MARTIROS VARDAPET AUS KRIM

VON

DR. P. HAMAZASP OSKIAN

MECHITHARIST

WIEN

MECHITHARISTEN-BUCHDRUCKEREI

1966

# ՉՈՐՍ ՀԱՅ ՏԱՂԱՍԱՑՆԵՐ ԵՒ ԱՆՈՆՑ ՏԱՂԵՐԸ

ՅՈՎՀԱՆՆԷՍ ԿԱՐՆԵՑԻ, ԳՐԻԳՈՐ ԱՐՔԵՊ. ՕՇԱԿԱՆՑԻ, ՄՈՎՍԷՍ ԴՊԻՐ ԿԱՐՆԵՑԻ ԵՒ ՄԱՐՏԻՐՈՍ Վ. ՂՐԻՄԵՑԻ

ԳՐԵՑ ԵՒ ՀՐԱՏԱՐԱԿԵՑ

**ԴԿՏ. Հ. ՀԱՄԱԶԱՍՊ ՈՍԿԵԱՆ**

Մխիթ. Ուխտէն

ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1966

## ԵՐԿՈՒ ԽՕՍՔ

Այս հատորն ամփոփումն է «Հանդէս Ամսօրեայ»ի մէջ լոյս տեսած ֆանի մը յօդուածներու [1]: Անոր հրատարակութեան առթիւ դիտել կու տամ, որ Աղպեանցի Ձեռագիրն այժմ Երեւանի Մաշտոցի անուան Մատենադարանին մէջ կը գտնուի եւ ունի թիւ 6682 (հմմտ. աստ էջ 69) եւ դարձեալ թէ Տ. Լ. Նազարեան «Պատմա–բանասիրական Հանդէս»ի 1964 տարուոյն չորրորդ թիւին մէջ (էջ 101—116) — դժբախտաբար վիեննա շատ հասած — լոյս ընծայած է խնամուած յօդուած մը. «Գրիգոր Օշականցու կեանքն ու ստեղծագործութիւնը»:

Հ. Հ. Ո.

---

[1] Ա. Ցովհաննէս Կարնեցի. *Հանդէս Ամսօրեայ* 1963. էջ 339—358. 489—506. Բ. Գրիգոր Արճեպ. Օշականցի. անդ 1964. էջ 7—28. 141—154 եւ 311—322. Գ. Մովսէս Դպիր Կարնեցի, անդ 1964. էջ 457—478 եւ Դ. Կարգ եւ թիւ թագաւորացն Հայոց ի Մարտիրոս վ.է Ղրիմեցւոյ. անդ 1965. էջ 31—50:

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

Հայ տաղասացներու վարքերը եւ անոնց գրութիւնները հետազօտող եւ նոյներուն տաղերու բծախնդիր հրատարակող Շուշանիկ Նազարեան 1962ին Երեւան լոյս ընծայեց Յովհաննէս Կարնեցի — Տաղարան: Այս հատորը դրդապատճառն եղաւ հետեւեալ տողերու:

Յովհաննէսի կամ Հաննէի՝ Կարնեցի յորջորջանքը կը մատնանշէ անոր ծննդավայրը՝ Կարին:

Շ. Նազարեան կը գրէ. «(Յովհաննէս) Առաջին երգերը գրել է 1770ական թուականների սկիզբներին՝ «Ի տղայական նորավարժ եւ խակակիրթ ժամանակի իմում», յիշատակում է նա: Յովհաննէս Կարնեցուց մեզ հասած վերջին թուակիր գործը գրուած է 1819 թուականին: Այս փաստերը հնարաւորութիւն են տալիս որոշելու նրա ծննդեան եւ մահուան մօտաւոր ժամանակը: Ծնունդը

---

[1] Անխոնջ Շ. Նազարեան քրտնաջան Ա. Մնացականի հետ 1951ին հրատարակած է Նաղաշ Յովնաթան, Բանաստեղծութիւններ. դարձեալ՝ նոյնին հետ 1958ին Պաղտասար Դպիր, Տաղիկներ սիրոյ եւ կարօտանաց ու 1957ին առանձին Պատմութիւն Ֆարման մանկան, միջնադարեան պոեմ. երեքն ալ տպուած Երեւան:

պէտք է փնտռել 1750ական թուականներու մէջ, իսկ մահը 1820ական թուականներու սկիզբներին» (Յոհաննէս Կարնեցի, Տաղարան, Երեւան 1962, էջ 6)։ Սակայն որովհետեւ Յովհաննէս Կարնեցին իր մասին կ՚արտայայտուի թէ «Վասն որոյ զպատմութիւն սոյնոյ Սրբը կոչեցեալ Սահակ մանկան երանելի նոր նահատակին Քրիստոսի ի նոյն իրագործութեան տարոջ ի ՌՄԻԷ (1778) թուոջն ի տղայական ի նորավարժ ժամանակի իմում անյարմար ստաչարութեամբ գրեալ էի» (Հայոց նոր վկաներ, Վաղարշապատ 1903, էջ 574) կը խորհիմ թէ անոր ծնունդը 1750ական թուականի վերջին տարիներու մէջ տեղի ունեցած ըլլայ, որով 1770ի սկիզբները եւ 1778 կրնան համաձայնութեան մէջ մտնել «Տղայական, նորավարժ եւ խակակիրթ» արտայայտութիւններու հետ։

Մարկոս վարդապետը Յովհաննէսի ծնողներու անունները մեզի հասցուցած է. «Յիշեսցէ ...շարադրող սոյնոյ տետրակիս (Սահակ մանուկ վկայի վարքի) Կարնեցի նոտար տիրացու Յովհաննէսն եւ զծնօղսն սորին Յարութիւնն եւ զՆուանն» (Նազարեան, անդ էջ 7)։ Իսկ Յովհաննէս կը յիշէ իր դաստիարակներէն եւ իրեն ուղղութիւն տուողներէն Մխիթար վարդապետը, երբ կը գրէ. «Աշխատութեամբ մանկավարժ Յօհաննէս նոտարիս հաւանութեամբ հօր իւրոյ Մխիթարայ վարդապետի» (Ձեռագիր Երեւանի Մատ․ի

Թ. 6601, անդ էջ 9[2]) եւ դարձեալ Ստեփաննոս Վ. Ջուղայեցի... «Որ եւ կարողութիւն ինձ մեղապարտիս գաղափարել զայն ամենացանկալի գիրքս քարոզից ...ի ՌՄԻԸ թուոջ (1779)... ի վայելումն գերյարգելի եւ հոգեւոր հօրն իմոյ Տեառն Ստեփաննոս վարդապետի Ջուղայեցւոյ ...Յիշեսջիք ի յընդունական յաղաւթս ձեր զայն վերոգրեալ յարգելի պետն իմ զվայելողն սորին... եւ զիս զյետնեալ ծառայս եւ ստասաւորս նորին զչնչին Յօհաննէս դրիչս Կարնեցի» (Թիւ 2039 Ձեռ. Երեւանի Մատ.ի, անդ էջ 10):

Թէ Յովհաննէս ե՞րբ գրկուած է իր մօրմէն ու հօրմէն, այդ չենք գիտեր, բայց անիկա Գր. Օշականցիի ծննդեան, վարքի ու վախճանման Յիշատակարանին մէջ (հմմտ. վարը) կ'աղերսէ «Խնդրեմ ի հանդիպողացդ յիշել... եւ հանդուցեալ ծնողսն իմ» (Թիւ 66 82 Ձեռ. անդ էջ 10):

Յ. Կարնեցի գործունէութեան լայն ասպարէզ կ'ունենայ Կարնոյ մէջ: Կ'ըլլայ մանկավարժ կամ ուսուցիչ եւ այնպիսի նուիրումով ու հմտութեամբ եւ նմանապէս անկողմնակալութեամբ ու անչահասիրութեամբ, որ արժանի կ'ըլլայ կոչուելու «Արդար վարժապետ. Նշանաւոր վարժիչ»: Իր աշակերտներու անունները մեզի չեն հասած, միայն

[2] ՀՍՍՌ Մինիստրների սովետին առընթեր Մ. Մաշտոցի անուան հին Ձեռագիրների ինստիտուտ «Մատենադարան» (Նազարեանց Ծ., Յովհաննէս Կարնեցի, Տաղարան, էջ 151):

մէկուն անունը՝ տիրացու Աղաջան. ինքն եւս անուանուած է «Տիրացու Յովհաննէս» (Ձեռ. Թ. 8081, անդ էջ 7)։ Անծանօթ կը մնայ ուսուցչութեան եւ դաստիարակութեան պարապումի սկզբնաշրջանը։ Արդէն 1799ին իր ինքնագիր Տաղարաններէն մէկուն վրայ կայ իր անձնական կնիքը «Յովհաննէս վարժապետ 1799» (Ձեռ. Թ. 8801, անդ էջ 7)։

Դարձեալ անիկա կ'ըլլայ նօտար, ինչպէս շատ ստէպ ինքը այդ կը չեշտէ իր ոտանաւորներու եւ ուրիշ գրութիւններու մէջ եւ համեստօրէն ինքզինքը կ'որակէ «չպէտ նօտարս» (անդ էջ 11)։ Քանի որ ինքզինքը իր յօրինած Վկայարանական տաղերու մէջ դատաստանական հարցերու շատ տեղեակ կը ցուցնէ՝ Շ. Նազարեանց շատ ուղիղ կրնայ եզրակացնել «Թերեւս Յովհաննէս Կարնեցին նօտարի պաշտօնով աշխատել է՝ Կարինի քաղաքային դատարանում» (անդ էջ 11)։ Սակայն անիկա կը հակառակի Գիւտ քհ. Աղայեանցի, որ Յովհաննէս Կարնեցին «նորա», այս է Գրիգորիս արքեպիսկոպոս Օշականցիի նօտարը կը համարի (Արձագանք 1888, էջ 22) պատճառաբանելով որ «Յովհաննէս Կարնեցին ինչպէս ցոյց են տալիս մէջբերումները (անդ էջ 11) չի ասում թէ ինքը եղել է Գր. Օշականցու նօտարը։ Այստեղ նա, ինչպէս յաճախ յիշատակում է իր անունը չպէտ նօտարս, նօտարս Յօհաննէս։ Բացի այդ Գր. Օշականցին իր շրջագայութիւնները Կարինում կատարել է 1797—

98 թուականներին եւ այնտեղ էր մահացել, մինչդեռ Յովհաննէս Կարնեցին դեռ եւս 1770ական թուականներին գրած չատ մը երգերում իրեն նօտար է անուանում» (անդ էջ 11)։ Յովհաննէս կրնայ այդ թուականներուն ինքզինքը նօտար անուանել եւ եղած ըլլալ, սակայն այդ արգելք մը չէ որ անիկա 1797—98ին Գր. արքեպիսկոպոսին եւս նօտարութիւն ըրած ըլլայ եւ անոր օգտակար եղած հնարաւորութեան սահմանին մէջ։ Նախընտրած է «չոպէտ» ու «անպիտան Յովհաննէս նօտար» որակումը (Թ. 884 Ձեռ. Վիեն. Մխիթարեան Մատենադարանի. հմմտ. Ոսկեան Հ. Հ., Մայր ցուց. Հայ Ձեռ. Մատ. Մխիթ. ի Վիեննա, Բ. հտր., էջ 467 ընդ մամլով) խորհելով համեստութեամբ՝ թէ անարժան էր բարձրաստիճան եկեղեցականի մը նօտարն ըլլալու, թէեւ կարճ ժամանակ մը, բայց հարկաւոր պարագայի մէջ։ Այս մասին տե՛ս քիչ յետոյ։

Յովհաննէս ժամեր պահանջող այս լուրջ աշխատանքներու մէջ դեռ կը գրաղի արտագրութիւններով եւ մասնաւորապէս կը նուիրուի բանաստեղծութեան եւ տաղաչափութեան կամ տաղագրութեան — ինքնագիր եւ թարգմանաբար։

Տ. Նազարեան կը գրէ. «Մատենադարանում (Երեւանի) պահպանւում են նրա ընդօրինակած տասնեակ Ձեռագրեր։ Դրանց մէջ հեղինակի երգերի ինքնագիր օրինակների հետ միասին կան ուրիշ գրչագրեր՝

տաղարաններ, քարոզագրքեր» (անդ էջ 7)։ Եւ անիկա լոկ արտագրութիւններով չէ գոհացած, այլ ջանադիր եղած ճաշակ ու արուեստ ներդնել՝ փոյթ տանելով գեղագրութեան, համաչափ դասաւորութեան եւ նկարազարդումի՝ գիտակից որ նօտար է, ուսուցիչ է եւ իր անունն ու համբաւը պէտք էր բարձր բռնել։ Երբեմն երբեմն նաեւ գրութիւններ խմբագրած է եւ համառօտած (անդ էջ 10)։

Մինչ Շ. Նազարեան կը գրէ Յովհաննէս Կարնեցին «Ծնվել է Կարին քաղաքում եւ իր ողջ կեանքն անցկացրել այն տեղ» (էջ 6), գինքը կը գտնենք Պաղեստին եւ այն՝ Երուսաղէմ, Բեթղեհէմ եւ ուրիշ սրբավայրեր ուխտագնացութեան։ Անոր այս ճամբորդութիւնը տեղի կ՚ունենայ 1804—1805ին։ Այդ գիտենք մեր — Վիեն. Մխիթ. Մատենադարանի — Թ. 1090 Ձեռագրէն։ Անոր մէջ, որ կը բովանդակէ Գր. Օշականցիի տաղերն ու արձանագրութիւնները տեսիլներով միասին, տարբեր գրով ու տարբեր դիրքով, գրուած ու կազմուած է տետրակ մը, որ դժբախտաբար սկիզբէն թերի է։ Կը բովանդակէ Յովհաննէս Կարնեցւոյ սոյն ուխտագնացութեան առիթով գրած ոտանաւորները կամ տաղերը։ Անոնց նկարագրական բովանդակութիւնը եւ քանի մը արտայայտութիւնները կը վկայեն թէ Յովհաննէս Կարնեցին բաւական ժամանակ Ս. Երկիր գտնուած է եւ ուխտի կատարման առնթեր լրջօրէն հետաքըր-

*քրուած է սրբավայրերու տեղագրութեամբ ու պատմութեամբ։ Անոր մէջ կը գրէ․*

*«Վայրն այն խոտաւէտ Բամեալ սահմանին,*
*Ուր հինգ հացն բաշխեաց հինգ հազար անձին,*
*Որ յոյժ վայելուչ է տեղն այն վայրին,*
*Զի լեռնադաշտ է․ ծաղկանց հոտ բուրեն։*
*՚Իաջողմամբ Փրկչին էլեալ մեք եկեալք,*
*Ի սոյն կենսաբուր վայրքըս իսկ հասաք․*
*Ներ (ԾԱՌԱՄԲ․ 1805) թւոջ ուխտաւորեցաք*
*Սրբութեան տեղեացս երկրպագեցաք*[3]*»։*

*(Թ․ 1090 Ձեռ․ թղ․ 114ա)։*

*Յովհաննէս ոչ թէ միայն ուխտաւոր, այլ նաեւ «արեղայ եւ աւելածու Սաղիմայ» եղած է, ինչպէս ինքը կ՚արտայայտուի իր յօրինած երեք ներբողական դամբանագրերու մէջ․ այսպէս՝ …«Յովհաննէս անուն ոմն արեղայէ, Սաղիմայ սրբոյ ի յաւելածուէ» (Մանանդեան Յ․ եւ Աճառեան Հ․, Հայոց նոր վկաները, Վաղարշապատ 1903, էջ 672, հմմտ․ տե՛ս էջ 671 եւ 673)։*

*Վաւերական կոյսի մասին իր գրութեան մէջ Յովհաննէս ինքզինքը կ՚անուանէ «մահտեսի» «․․ՌՄԿ ի մանկավարժ նոտար մահտեսի Յօհաննիսէ Կարնեցւոյ» (Նազարեանց, անդ էջ 14)․ այդ եւս վկայութիւն է եւ ապացոյց Յովհաննէսի Ս․ Տեղերու այցելու–*

---

[3] *Ազաւնունի Մկրտիչ եպ․, Միաբանք եւ այցելուք հայ Երուսաղէմի, Երուսաղէմ 1929, էջ 352—53։*

*թեան: Թէ անիկա ուրիշ երկիրներ ու քաղաքներ ալ գացած է — կ'ենթադրուին ճամբու վրայ եղածներու այցեր — չենք գիտեր: Նաեւ անծանօթ են անոր մահուան պարագաները: Գուցէ* «1820*ական թուականներու սկիզբներին*» (*Նազարեան, անդ. էջ* 6) *եւ կամ աւելի ուշ, եթէ խոր ծերութեան հասնելու բախտը ունեցած է:*

*Յովհաննէս Կարնեցին իր ետին կը թողու կամ ազգին կը կտակէ ոչ աննշան հունձք մը, որ դժբախտաբար երկար ատեն աննկատ ու լքուած կը մնայ: Զարմանալի է որ Կարնոյ մէջ — նկատի ունենալով Հ. Աճառեանի հրատարակած Սանասարեան Վարժարանի Ձեռագրաց ցուցակը* (*տպ. Վիեննա* 1900) *եւ Հ. Ց. Քօսեանի Արծնեան վարժարանի եւ Կարնոյ գիւղերու Ձեռագրաց ցուցակները — անոր գրութիւններէն եւ արտագրութիւններէն Ձեռագիրներ չկան կամ անծանօթ մնացած են*[4], *մինչդեռ Երեւանի պետ. Մատենադարանին մէջ անոնցմէ բաւական թիւ կը գտնուին:*

*Յովհաննէս Կարնեցին գրած է՝*

1. «Պատմութիւն կամ վկայաբանութիւն Մըսր կոչեցեալ Սահակ մանկան» *եւ այն երկիցս. նախ* 1778*ին անյարմար ստաչարու—*

[4] *Օրինակ մը Կարնոյ մերձ Խոտորջուրէ առաքուած է ի Վիեննա* (*հմմտ. Ոսկեան Հ. Հ., Մայր ցուց. հայ. Ձեռ. Մխիթ. Մատ. ի Վիեննա, Բ. հատ. էջ* 463:

թեամբ իր տղայական հասակին մէջ եւ յետոյ 1788ին ի հարկադրութենէ սիրելի բարեկամաց ...ընդլայնմամբ եւ տասնավանկեայ տաղաչափութեամբ, զոր Յ. Մանանդեան եւ Հ. Աճառեան հրատարակած են Հայոց նոր վկաներ գրքի մէջ (Վաղարշապատ 1903, էջ 572—561:

Սոյն պատմական տաղին 14 գլուխներու առաջին տուներու սկզբնատառերը կը յայտնեն հեղինակին անունը «Ի Յօհաննիսի է այս»:

2. Յարութիւն Կարնեցւոյ վկայաբանութիւնը: Այս եւս տպուած է միեւնոյն գրքին մէջ (էջ 620—627): Անկէ երկու օրինակ ձեռագիր կը գտնուի Վիեն. Մխիթարեանց Մատենադարանին մէջ (Հմմտ. Ոսկեան, Մայր ցուց. հայ. Ձեռ. Մատ. Մխիթ. ի Վիեննա, էջ 341. Թ. 781 ԺԲ): Այս դրութեան տուներու սկզբնատառերը կը կազմեն «Ի Հաննէ նոտարէ Կարնեցւոյ ի սէր սրբոյս ասացեալ է բանս»:

3. Դվնիկի նահատակներու պատմութիւնը, բայց յատկապէս Վառվառէ աղջկան նահատակութիւնը եւ այս եւս երկու խմբագրութեամբ՝ ընդարձակ ու համառօտ (տպ. Արարատ 1895, էջ 445 եւ Հայոց նոր վկաներ, էջ 646—73): Հեղինակը՝ մանկավարժ նոտար մահտեսի Յովհաննէս Կարնեցի ինքնին կը հաւաստէ թէ աշխատասիրած է մեծաւ հոգունակութեամբ հասու լինելով համայն եղելութեանց եւ զհաւաստին ուղղագրութեամբ ի լոյս ընծայեալ (անդ. էջ 674):

4․ Ղազար Երիտասարդին նախատակութեան պատմութիւնը, *որ դեռ անտիպ կը մնայ եւ անոր յայտարարումը կը պարտինք անդադրում պրպտումներու Ծ․ Նազարեանի, որ այս չորս գրութիւններու մասին ճշդիւ կ՚արտայայտուի «Չնայած Յովհ․ Կարնեցու այս երգերը թոյլ են բանաստեղծական առումով... այնուամենայնիւ դրանք որպէս* 18*րդ դարի վերջին եւ* 19*րդ դարի սկիզբին ստեղծուած գործեր, որպէս հայ նոր գրականութեան, էպիկական սեռի նախորդող շրջանի նմուշներ, պիտի գնահատուեն եւ ներդրուեն պատմութեան մէջ»* (*անդ էջ* 35)։

5․ *«Բազմավէպ»ի մէջ* (1884, *էջ* 118—122) *լոյս տեսած է* «Յաղագս մեծի սովոյն եւ սղութեան, *որ եղեւ ի քաղաքս Կարին եւ ի շրջակայսն նորին... շարադրեալ հոմերական տաղաչափութեամբ յամենանուաստ մանկավարժ նոտարէ մահտեսի Յովհաննիսէ ի սյն քաղաքէ յամի Տեառն* 1813, *ի մերս ՌՄԿԲ»*, *որուն վերջին տան մէջ հեղինակը կ՚ըսէ «Յոմանց եղբարց առհարկեցայ նուաստս Յովհաննէս նոտար ծառայ Զբանս ի կարճոյ գրել փութացայ․ Զերդ գիս յիշման տիր բաղձացայ»*[5]։

6․ *Վիեն․ Մխիթարեանց Մատենադարանին Գրիգոր Օշականցւոյ Տաղերը, Արձանագրութիւնները եւ Տեսիլները պարու–*

---

[5] *Ասոնց եւ տաղերու մասին հակիրճ, զի Ծ․ Նազարեանց վերյիշեալ գրքին մէջ ընդարձակօրէն արտայայտուած է։*

նակող երեք Գրչագիրները (Թ. 884, Թղ. 92ա—87բ, Թ. 885. Թղ. 98ա—103ա եւ Թիւ 1090. Թղ. 88բ—93ա), ինչպէս նաեւ Երեւանի Մատենադարանի Թ. 7672 եւ 6682 Ձեռագիրները (Նազարեանց, անդ էջ 9. Հմմտ. եւ Արձագանք 1888, էջ 22) ունին «Յիշատակարան պատմաբանօրէն վասն սննդեան եւ աստուածհաճոյ վարուց՝ եւ երջանիկ վախճանման առն Աստուծոյ Տեառն Գրիգորի արքեպիսկոպոսի եւ շնորհալոյս վարդապետի»: Կը սկսի «Զպատմութիւն ծննդեան եւ սնընդեան այսորիկ հոգելի եւ երանաշնորհ առնս Աստուծոյ Օշականցի Գրիգորիոս Արքեպիսկոպոսի եւ երջանիկ րաբունապետիս: Միաբանք Սրբոյ Աթոռոյն էջմիածնի ի ծերունի վարդապետաց լուեալ գոլով գոլով, յորոց եւ մեք տեղեկացեալ արձանացուցաք աստ սակաւուք»: Եւ հեղինակը վերջաւորութեանը կը յաւելու «Ուրեմն խնդրեմ ի հանդիպողացդ յիշել ի մաքրափայլ աղօթս ձեր զիս անպիտան Յօհաննէս նօտարս եւ զհանգուցեալ ծնողսն իմ...» (Ոսկեան Հ. Հ. Մայր ցուց. Բ. էջ 466—467):

Յոհաննէսի վերոյիշեալ խօսքերէն կարելի է երկու հետեւութիւն հանել, այս է՝ կամ էջմիածնէն միաբաններ եկած են Կարին եւ ինքը անոնցմէ Գրիգորիս արքեպիսկոպոսի մասին տեղեկութիւններ առած է եւ կամ ինքը էջմիածին գտնուած է եւ անոնց հետ յարաբերութեան մէջ մտած: Իսկ Գրիգորիսի հետ իր ունեցած յարաբերու-

թեան մասին ինքը կ՚արտայայտուի հետեւեալ խօսքերով եւ նաեւ անոր նօտար ըլլալուն բաւարար ապացոյց կու տայ. «Եւ ի միւսում աւուր վերստին կոչեալ զաւագ քահանայն եւ զիս չպէտ Նօտարս (ըստ որում յոյժ սիրէր զանխիրելի ծառայս եւ բազմիցս արդիւնարար օրհնութեամբն ուրախ առնէր մանաւանդ յայնմ պահու): Եւ ապա ընկողմանեալ ի վերայ բարձի բերել ետ թուղթ եւ մելան եւ արար կտակ իւրաքանչիւր Աթոռոց, վանօրէից եւ Եկեղեցեաց, քահանայից եւ աղքատաց յոյժ առատօրէն, ինքն նրանելին հեծեծանօք ասէր եւ ես ծառայս գրէի, ի մէջ այնմ դառն ցաւոյն գոլով այնպիսի կարգաւ յօրինէր զբան կտակին, մինչ զի հիացուցանէր զամենեսեան» (Թ. 884 Ձեռ. Թղ. 95բ—96ա):

7. Յովհաննէս «Ի սփոփումն անձին իւրոյ եւ ի հրճուանս երգասէր անձանց» գրած է բազմաթիւ տաղեր — երգեր եւ այն՝ ըստ Նազարեանցի «Դրանց թիւը հասնում է չուրջ 130ի» (անդ էջ 38) եւ որ անոնց ցանկը կը դնէ (անդ էջ 148—49): Նմանապէս թրքերէն տաղեր՝ հայերէնի եւ իր տաղերէն մաս մը թուրքերէնի թարգմանած է[6]: Դարձեալ փոյթ տարած է անոնց եղանակին եւ տաղերու սկիզբը յաճախ նշանակած թէ թրքերէն ո՛ր տաղի եղանակով անոնք պիտի երգե-

---

[6] Թարգմանած է նաեւ Ն. Շնորհալւոյ «Առաւօտ լուսոյն». Հմմտ. Նազարեանց, անդ էջ 56:

ցուին : Միթէ կարելի՞ է խորհիլ որ ինքն ալ եղանակներ հնարած ըլլայ, գոնէ քանի մը հատի :

## Ա. ԿՐՕՆԱԿԱՆ ՏԱՂԵՐ

Այս տաղ — երգերու մեծագոյն մասը սիրոյ տաղեր են, որոնցմէ 34 հատ Նազարեանց կը հրատարակէ (անդ էջ 67—134) : Մի կողմ կը թողու անոր կրօնական երգերը (անդ էջ 42) : Բայց այդ կրօնական տաղերն ալ կը ներկայացնեն որոշ արժէք մը իրենց բովանդակութեամբ ու սրտի յուզումով եւ մտքի յղացում, թէեւ ոչ այնքան նշանակելի : Անոնցմէ քանի մը հատ Վիեն. Մխիթարեանց Մատենադարանի Թ. 1042 Ձեռագրին մէջ կան : Ան հին Ձեռագիր մը չէ, այլ զանազան Ձեռագիրներէ տաղերու ամփոփում մը, արտագրութիւն մը, զոր մեծանուն Հր. Աճառեան ըրած է[7] : Անոր մէջ Յովհաննէս Կարնեցիէն ընդօրինակուած են 19 տաղ — երգեր, որոնցմէ կրօնական բովանդակութեամբ են հետեւեալները :

[7] Հմմտ. Ակինեան Հ. Ն., Գրիգորիս Ա. Կաթողիկոս Աղթամարի, կեանքն ու քերթուածները, Վիեննա 1958, էջ ՀԴ :

1.

## ԵՐԳ ԾՆՆԴԵԱՆ ՏԵԱՌՆ ՄԵՐՈՅ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ

Թ. 1042 բղ. 340ա

*Ի յԱստուծոյ Հօրէն Բարձրեալ աւետիս,*
*Գաբրիէլ պետն առաքեալ։*

*Յորմէ ողջոյնն սուրբ տուեալ*
*Առ Մարիամ կոյսն ընտրեալ։*

*Ուրախացիր ասէ բերկրեալ,*
*Զի ծնցիս Բանն Աստուած օծեալ։*

*Հոգին Աստուած դքեզ մաքրեալ,*
*Զօրութիւն Հօր հովանի լեալ։*

*Առ այս մինչ սուրբ Կոյսն հնազանդեալ*
*Եւ Բանն Աստուած յարգանդն իջեալ։*

*Ներ ինն ամսեայ յորում բնակեալ,*
*Ի՚անճառապէս եղեւ ծնեալ։*

*Նայնմ Բեթղեհէմ տեղւոջն օրհնեալ,*
*Ի յանբանիցն մըսուր եդեալ։*

*Ի յերկնուստ աստ հրեշտակք իջեալ*
*Փառք ի բարձունս վերերգեալ։*

*Սոյն հրաշս եւ մինչ հովուացն տեսեալ*
*Եւ ընդ հրեշտակս երգակցեալ։*

*Էւ նըշանաւ աստեղն եկեալ՝*
*Երեք արքայն ՚ւերկրպագեալ։*

*Եւ մեք այսօր ուրախացեալ*
*Փառս տացուք սուրբ Ծննդեան օրհնեալ*[8] :
*Տներու սկզբնատառերը կը կազմեն՝ «ի Յոհաննիսէ է»* :

2·

ԵՐԳ ԱՌ ՍՈՒՐԲ ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆՆ· Ի ԳՈՑՆ ՈՐ ՑԹԷ· ԿԷՁԷ ԿԷՁԷ ՊՈՒ ՋԻՀԱՆԻ

Թ· 1042 բղ· 347ա

*Տաճար տենչալի սուրբ Հոգւոյն, ով երջա-*
*նիկ տիրուհի ,*
*Գերազանցեալ ի բնութենէս վերնոյն եղեր*
*ցանկալի ,*
*Ծնար զծոցածին Բանն Աստուած , զհաստա-*
*տիչ համայն աշխարհի :*
*Վասն եղկելի քոյ ծառայիս մաղթեա քո*
*սուրբ Միածնի ·*
*Զի զթասցի ի մեղուցեալս եւ ծագեսցէ*
*յիս զիւր լոյս :*

*Անճառապէս զանպարագիրն ի սուրբ զրկիդ*
*դու բարձեր ,*
*Զկերակրողն տիեզերաց կուսիդ կաթամբ*
*սնուցեր ,*
*Զբարձօղն յերկնի ւերկրի մաքուր բազկօք*
*դու բարձեր :*

---

[8] *Նոյնը աւելի ընդարձակ թարգմանուած՝ տաճ-կերէն էջ* 189—193· *«զոր զանց ըրինք» կը գրէ Հ· Աճառեան: Չէ նշանակուած թէ ո՞ր տարին յօրինուած է:*

Իսկ արդ մեծաւ Յորդոր բանիւ Ոտս տի–
 րուհւոյդ անկանիմ.
Հայցեա ի քոյ Առատ Որդւոյդ Ներել հիգոյս,
 որ գոչեմ,
Ներ սոյն թուոյս (ԻԲԵՌԱՄԲ) այս Սաստիկ
 նեղեալ էրէրիմ :

Դիտ. Յորդորակը ամէն տունէ յետոյ կրկնելի :

Գրուած է 1781ին. (Ի — 20 + Բ — 2 + Ե — 5 + Ռ — 1000 + Ա — 1 + Մ — 200 + Բ — 2 = 1230 + 551 = 1781) :

Վերջին տունը կը յայտնէ հեղինակին անունը՝ «Ի Յոհաննիսէ» :

3.

ԴԱՐՁԵԱԼ ԵՐԳ ԱՌ ՍՈՒՐԲ ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆՆ ԹԱՐԳ ՇՐԹԱՆՑ ԿԱՓԿԱՓՄԱՆ: Ի ԳՈՅՆ ՈՐ ԱՍԷ ՊԻՐ ՓԱՐ–ՁԱՃՔ ՊՈՒԼՈՒՏ

Թ. 1042 թղ. 332ա

Ի հրեղինաց դասուց օրհնեալ դու Կոյս տի–
 րածին.
 Քան զնոսա գերացեալ թէեւ երկրածին.

Յոյժ սոսկալի աթոռ ահեղ էին հայրածին,
 Արդ այց արա ինձ տիրուհի, ժտեա առ
 Յիսուս,
 Յոյս, յոյս, ոհ ծաղել զլոյս հոգւոյս :

Ոսկիածոյլ դու աշտանակ յողնալոյս ջահին,
Որոյ լուսով խոկ լցեալ էր երկիր եւ երկին.
Հիացուցեր զհանուր չակս զեր քան զքըննին:

Արկեր ընդ քեզ արդարութեան այն վեհ արեգակ,
Եւ ընդ յարգոյ ոտիւքդ զլուսինն ըստուերատեսակ.
Նշուլազարդ դու ոսկեյեռ լուսատու հոյլակ:

Նոր Աղին դու ունկեալ՝ ձեռօք Հօրըն հզօրի,
Ելեալ ի քէն ծառն կենաց արդարեօք ի լի.
Ի քէն ընկալաք ըզկերակուր հոգւոց կենաալի:

Սատրիկ սիրոյդ հարկեալ եղէ ծառայս յոյժ չնչին,
Անկից չըթանց երգս ձօնեցի առ ծնօղդ Արարչին.
Է լրացեալ (ԵՌՋԱՅՆ) թիւըն պատեցուց-չին:

Դիտ. Յորդորակը կրկնել ամէն տունէ վերջ. զուգաթիւ տուներուն դնելով Թագուհի փխ. Տիրուհի:

Գրուած է՝ ԵՌՋԱՅՆ թուին = ՌՉՁԶ = 1786ին (Ե — 5 + Ռ — 1000 + Ջ — 80 + Ա — 1 + Յ — 300 + Ն — 400 = 1786):

Տներու առաջին եւ երրորդ տողերու առաջին տառերը կը կազմեն՝ «Ի Յոհաննիսէ»:





4.

ԵՐԳ ԱՌ ՍՈՒՐԲ ԿԱՐԱՊԵՏՆ. Ի ԳՈՅՆ ՈՐ ԱՍԷ. ԿԻՐՏՐԸՄ ԵԱՐԸՆ ՊԱՀՋԱՍԸՆԱՅ ԿԻՒԼ

Թ. 1042 թղ. 336ա

Ի մթաթատ այս կենցաղիս աստղ առաւօ–տեալ,
Ի ծագմանէ մեծի արփւոյն ԱՒԵՏԻՍ տուեալ,
Լրումն ստուերատիպ օրինին եւ նորս ըսկսեալ,
Վասն իմ մեղօք մթացելոյս միշտ առ Տէր մաղթեա,
Զի ծագեսցէ ինձ եղկելւոյս ըղձաւու–թեան լոյս:

Յանդատին մօրդ լցար հոգւով ՄԱՐԳԱ–ՐԷԱԿԱՆ
Մինչ եկն մայր Տեառն առ մայրդ ձայնիւ ողջագուրական,
Խայտալով եւ մօրդ բանիւն եղեր օրհ–նաբան,
Վասն իմ մեղօք յար մեռելոյս միշտ առ Տէր մաղթեա,
Զի կենարար բանիւ իւրով զկեանս տացէ հոգւոյս:

Հայր քոյ ընդ տեսիլ պետին Վերնոյն յամէն սոսկացաւ.
Եւ չհաւատալով ծննդեան քոյ լեզուն համրացաւ.

Իսկ մինչ գրեաց զանունդ ՅՈՀԱՆՆԷՍ
եւ իսկոյն բացաւ.
Վասն իմ մեղօք կարկամելոյս միշտ առ
Տէր մաղթեա,
Զի արձակեսցէ զլեզու իմ խօսել զիւր
հաճոյս:

Նստեալ կենօք յամս երեսուն ձայնդ յանա–
պատին,
Կոչմամբ Հոգւոյն իջեր քարոզել յա–
պաշխարութիւն,
Հարցողացն ասացեր թէ՞ եմ ԱՌԱՔԵԱԼ
Փրկչին,
Վասն իմ մեղօք զառածելոյս միշտ առ
Տէր մաղթեա,
Զի շնորհեսցէ ապաշխարութիւն ինձ
թշուառելոյս:

Նուաստացեալ վեհ արքայն մեծ եւ կարող
Փրկիչ
Եկեալ խնդրէր ի քէն մկրտիլ, որ էր
զմեզ սրբիչ,
Որ եւ սոսկմամբ ստեղծողին քո եղեր
ՄԿՐՏԻՉ.
Վասն իմ մեղօք աղտեղելոյս միշտ առ
Տէր մաղթեա,
Զի տացէ եւ ինձ արտասուօք լուանալ
զաղտ հոգւոյս:

Ստոր իջեր Թագաւորին յառաջ ընթացեալ,
Յաշխայնոց ւի դժոխսն եղելոց հոգւոց
քարոզեալ,

Հզօր Փրկչին զմեզ փրկելոյն ԿԱՐԱՊԵՏ
դու լեալ,
Վասն իմ մեղօք գերեցելոյս միշտ առ
Տէր մաղթեա,
Զի ազատեսցէ ի գերողէն, հանցէ զիս ի
լոյս:

Էին սիրոյն վառեցար, ով մաքուր տատրակ,
Յանդիմանելով զանուղղայս բանիւ հա–
մարձակ,
Վասն օրինացն ՄԱՐՏԻՐՈՍԵԱՆ եղեր
նահատակ.
Վասն իմ սիրատառեցելոյս միշտ առ Տէր
մաղթեա,
Զի վառեսցէ զիս ի սէր իւր՝ պաղիլ յս–
տորայնոյս:

Էռափափաք ըղձիւ այս երգս յօրինելով,
Բարձրապատիւ քում սրբութեանդ առ–
ընծայելով,
Մեծի Տեառնէդ իմմէ խնդրեմ յոյժ պա–
ղատելով.
Յաղագս հիքոյս արդ յատկապէս միշտ
առ Տէր մաղթեա,
(ԹԱԶՄԻ) թուոյս ծագել ի յիս զշնորհս
բազմալոյս:

Գրուած է ԹԱԶՄԻ թուին յաւել 551, այս է՝ 1778ին (Թ — 1000 + Ա — 1 + Զ — 6 + Մ — 200 + Ի — 20 = 1227 + 551 = 1778):

Տներու սկզբնատառերը կը կազմեն՝ «ի Յ(ո)հ(ա)նն(ի)սէ ե»:

## 5.

Թ. 1042 բդ. 330ա

Թչնամիք անձինս որք պատեցին զիս,
Լեզուաւ նենգաւորաւ նախատեցին զիս,
նախատեցին զիս:
Արի, Տէր իմ, արի ի յարդարութիւն
Դատեա Տէր զայնոսիկ որք դատեցին զիս
եւ ատեցին զիս:

Ցարեան ի վերայ իմ սըտագոյն վկայք,
Որպէս սուրբ զՕծելոյդ հնոյն քահանայք,
հնոյն քահանայք:
Լից զերեսս նոցա արհամարանօք:

Բացին ի վերայ իմ զբերանս իւրեանց՝
Առ ի խածատել զիս, խրախուսեն միմեանց,
խրախուսեն միմեանց.
Մի լռեր Տէր յինէն, մի բացեայ առներ:

Զոր ոչն գիտէի, ասէին զինէն
Եւ զոր ոչ գիտէին խօսէին զինէն,
խօսէին զինէն:
Ո՛վ որ քննես զմիտս եւ զերիկամունս:

Այրեցին զտաճար Սրբութեանդ քո,
Պղծեցին զտաճար անուան քո Սրբոյ,
անուան (քո) սրբոյ:
Որ սասցեր իմ է Վրէժխնդրութիւն:

---

9 Հմմտ. այս տաղերը Ոսկեան Հ. Հ., Մայր ցուցակ. Բ. էջ 680: Այս՝ խորագիր չունի:

Դիտ․ *յորդորակը կրկնել ամէն տունէ վերջ ։*

Հ․ *Անտառեան այս տաղին Յովհաննէս Կարնեցւոյն գրչէն ըլլալուն վրայ կասկած ունեցած է եւ հարցականով նշանակած՝ «Մահտեսի Յովհաննէս Կարնեցի՞» ։ Իր կասկածը խրատացի կը թուի համեմատելով այս տաղը Յովհաննէսի միւս տաղերու յօրինուածքի հետ ։*

## Բ․ ՍԻՐՈՅ ՏԱՂԵՐ

*Յովհաննէս Կարնեցիէն Թ․* 1042 *Ձեռագիր Տաղարան Հաւաքածոյին մէջ կան սիրոյ հետեւեալ տաղերը ․*

1․ *Թղ․* 329*ա ։ Տաղ սիրոյ․ ի գոյն, որ ասէ․ Կէլ եանըմայ քուզում ճիլվէ ։ Արի մօտս նազելի իմ ։*

2․ *Թղ․* 331*ա ։ Տաղ սիրոյ․ ի գոյն, որ ասէ․ Ճէյտա պիւլպիւլ․․․ ։ Ի գեղեցիկ վարդէն երգնակն ոհ, ոհ, ոհ էր գրկեալ ։*

3․ *Թղ․* 333*ա ։ Տաղ սիրոյ․ ի գոյն, որ ասէ․ Նիճէ օտլանմայիմ․․․ ։ Ի հրճուանաց ի բաց դարձիր, ով անձն իմ ։*

4․ *Թղ․* 334*ա ։ Տաղ սիրոյ․ ի գոյն, որ ասէ․ Կէլին քըզլար․․․ ։ Իմ անձկալի ազնուազոյն սիրելի ։*

5․ *Թղ․* 335*ա ։ Երգ կամ տաղ սիրոյ, որ ասէ․ Հէյ կիւզէլէր․․․ Իմ գեղեցիկ ազնուատիպ սիրելի ։*

6. Թղ. 337ա: Տաղ սիրոյ. ի գոյն, որ ասէ. Պատէ ինմէզ...: Իմ սիրելւոյդ աղնիւ տեսոյն բաղձացայ:

7. Թղ. 338ա: Տաղ սիրոյ. ի գոյն Ղալէնտարու. Իմ սրտէ սիրեալ, յոյժ սիրելի, սիրոյդ կարօտ եմ:

8. Թղ. 339ա: Տաղ սիրոյ. ի գոյն, որ ասէ. Գարշըրտայ գալայ... Իմ քաղցրագոյն սիրելի աննման, աննման:

9. Թղ. 341ա: Տաղ սիրոյ. ի գոյն, որ ասէ. Գեղեցիկ պատկեր... Ի սէր սիրելւոյդ, աղնիւ նազելւոյդ:

10. Թղ. 342ա: Տաղ սիրոյ. ի գոյն, որ ասէ. Այրըլըխ... Ի սէր սիրոյդ սեւեռեցայ պնդագոյն:

11. Թղ. 343ա: Տաղ սիրոյ. ի գոյն, որ ասէ. Էյ պէնըմ... Իսկական եւ բարոյդ սիրելիս:

12. Թղ. 345ա: Տաղ սիրոյ ի գոյն, որ ասէ. Ալ տէնիզն...: Ի սախըմանէ սիրոյ քոյին, գեղեցիկ սէր իմ (կրկ.):

13. Թղ. 346ա: Տաղ սիրոյ ի գոյն, որ ասէ. Պիր եօսմանըն... Մէկ գեղեցկի մի սէրն կայ ցաւալի գըլխիս[10]:

Այս տաղերէն հետեւեալները Ծ. Նազա-

---

10 Հմմտ. այս բոլոր տաղերը՝ Ոսկեան Հ. Հ., Մայր ցուցակ. Բ. հտր. էջ 680, ուր կարելի չէ եղած յիշել Թ. 6, զի ցուցակագրութեան ժամանակ տրամադրելի չէ եղած. (Թ. 1042 Ձեռագիր Տաղարանը կազմուած չէ եւ թղթերը անջատ անջատ դրուած):

բեանցի «Յովհաննէս Կարնեցի· Տաղարան» գրքին մէջ հրատարակուած են·

Թ· 1· էջ 142 (Թ· 30)·
Թ· 2· էջ 120 (Թ· 28)·
Թ· 3· էջ 122 (Թ· 29)·
Թ· 4· էջ 90 (Թ· 15)·
Թ· 9· էջ 74 (Թ· 7)·
Թ· 11· էջ 84 (Թ· 12)·
Թ· 12· էջ 107 (Թ· 23)·
Թ· 13· էջ 131 (Թ· 33)։

Իսկ Թ· 6 (էջ 149), Թ· 8 (էջ 149), Թ· 10 (էջ 148) յիշուած են։

Թ· 7ը (Թղ· 398ա) նմանութիւն ունի իր գաղափարներով, արտայայտութիւններով եւ բառագանձով էջ 96ի (Թ· 18) վրայ հրատարակուած տաղի հետ·

Թ· 7·

Իմ սրտէ սիրեալ, յոյժ սիրելի, սիրոյդ կա–
րօտ եմ,
Գեղեցիկ տեսոյդ, քաղցրաբարբառ խօսոյդ
կարօտ եմ։

Թ· 18 (էջ 96)·

Իմ սիրելի յոյժ գովելի,
Բաղձայ տեսոյդ արդ ակունք իմ։

Թ· 7·

Ոսկեայ բաժակ դու սրտի իմոյ ուրախացու–
ցիչ·

Թ· 18·

Ոսկեայ բաժակ զուարճացուցիչ,
Սրտի իմոյ միշտ սփոփիչ։

Թ· 7·

*Արեւնման դեղով փայլիս պայծառադար-*
*դեալ.*

*Թ. 18.*

*Արեւնման դու լուսալիր*
*Տեսլեամբդ արա զիս ցնծալի:*

Ծ. Նազարեանցի այս յիշատակած եւ չհրատարակած տաղերը իր օրինակին հետեւելով տպագրութեան չեմ յանձներ:

Թ. 5 տաղը չգտայ Ծ. Նազարեանցի Յովհաննէս Կարնեցիի տաղերու ցանկին մէջ (էջ 148—49): Սակայն կը խորհիմ թէ անոր Յովհաննէսի գրչէն ու սրտէն ըլլալուն վրայ կարելի չէ դիւրաւ կասկածիլ, զի իր բովանդակութեամբ եւ յօրինուածութեամբ անոր միւս տաղերուն դրոշմը կը կրէ, զի «Յովհաննէս» անունը կը կազմեն տուներու առաջին եւ վերջին տողերու առաջին տառերը եւ զի միւս տաղ-երգերու հանգոյն ունի վերջին տան մէջ Թուական:

Այս տաղը կը հրատարակեմ: Թող ըլլայ նմոյշ Յովհաննէսի սիրոյ տաղերու:

ԵՐԳ ԿԱՄ ՏԱՂ ՍԻՐՈՅ Ի ԳՈՅՆ ՈՐ ԱՍԷ, ՀԷՅ ԿԻԻՁԷԼԷՐ, ՇԱՀԼԱՐ ՇԱՀԻ ԷՖԷՆՏՄ

Թ. 1042 բդ. 335ա

Իմ գեղեցիկ ազնուատիպ սիրելի,
Հատոր հոգւոյս ռատ ըղձանացս բաղձալի.

Յօժ աննման ամենեւին տենչալի ։
Սիրով քոյին կիզեր զսիրտ իմ սիրասուն,
Ազնիւ հոգեկից, քաղցրիկ սիրակից,
Լուր իմ այս աղէտիս, հրով սիրոյդ,
Կիզեր զանձն իմ նազելի ։

Ոսկեփունջ վարսդ զամպարապէս փայփայ-
լուն,
Թագազարդեալ գեղաչքեղ քոյդ գլխուն,

Հրաշատես դէմդ արեւանման շողշողուն ։

Ակունք քոյին լճակ մաքուր ծովային,
Կամարացեալ յօնք քոյ նկար թխային,

Նման վարդի այտք քոյ զուարթ կարմրային ։

Նարօտ պայծառ բամեալ հիւսեմ շարս
ականց,
Սիրաձօնեալ քումդ գլխոյ գերապանծ,

Իբրեւ հոյլակ դու լուսատու գերազանց ։

Սէր իմ անմար ի սէր սիրոյդ վառեցաւ,
Անխզելի պարաւանդեալ միացաւ,

Եւ տխրալի (մթառիթ) թիւս մերժեցաւ ։

Դիտ. Յորդորակը կրկնել ամէն տունէ վերջ ։

Գրուած՝ ՄԹԱՌԻԹ թուին (Մ — 200 +

Թ — 9 + Ա — 1 + Ռ — 1000 + Ի — 20 + Թ — 9 = 1239 + 551 = 1790) :

Ստուգիւ «Յովհաննէս Կարնեցու սիրոյ տաղերը մարդկային ծանօթ յոյզերի եւ զգացմունքների . . . արտայայտութեան ձեւերի, կառուցուածքի մտայղացման եղանակների, պատկերների ստեղծման մէջ յաճախ այնքան ինքնատիպ են, որ նա կարող է մրցել իր միջավայրի շատ տաղասացների հետ : Դրա պատճառը այն է, որ Յովհաննէս Կարնեցու գրչի վրայ հաւասարապէս ազդել են ե՛ւ միջնադարեան անհատական պոեզիան, ե՛ւ ժողովրդական, աշուղական երգը : Եւ ակնյայտ է, որ աւելի քան անարատ, կենսախինդ ու անպաճոյճ են Կարնեցու սիրոյ այն տաղերը, որոնց մէջ ուժեղ են ժողովրդական երգի շունչն ու ոգին» (Նազարեանց, անդ էջ 48) :

Յովհաննէս Կարնեցին փորձառու տաղասաց է : Ժողովրդական զանազան դասակարգերու եւ խաւերու հետ յարաբերութեան եւ շփումի մէջ մտած՝ ու ընտանեկան յարկերու մէջ տեսնուածները եւ խօսուածները աւելի մօտէն տեղեակ՝ ազդուած է, յուզուած է : Շատ տպաւորիչ նկատած է արտաքինը իգական սեռին, ուստի իր տաղերգերուն մէջ ստէպ շեշտած ու երգած է դէմքի ու մարմնոյ ներդաշնակութիւն ու գեղեցկութիւն : Հոգեկան ու մտաւոր կարողութիւններ եւ ապրումներ եւս չէ անտեսած, բայց անոնք կրնային աւելի ցայտուն ներ-

*կայացուիլ։ Անոր տաղ–երգերուն մէջ լաւագոյններ կրնան համարուիլ այն մասերը, որոնք սիրոյ ծնունդ՝ սրտմաշուք եւ ողետանջ կարօտը հարազատօրէն եւ յուզիչ կը ներկայացնեն.*

*Օրերս բոլոր ցաւօք յինէն անցանի,*
*Համայն վայելք յաչս իմ ոչինչ տեսանի,*
*Տալ կարօտոյդ բնաւին ոչ չիջանի*
*Արի, կեանք իմ, գիս հրճուեցո յարաժամ*[11]*։*

*Կամ՝*

*Արտօսր յաչացս գետօրէն յորդ հեղանին,*
*Սարեր, քարեր ինձ ողբակից եղանին.*
*Ռամք Թռչնոց՝ երգելոյս իմ ձայնակցին,*
*Արի՛, լոյս իմ, ի յիս փայլեա յարաժամ*[12]*։*

*Կամ՝*

*Նստեալ եմ մենացեալ ի Նըսեմ յարկի,*
*Ընկերազուրկ նման անբախտ տատրակի,*
*Եւ լեալ եմ իբրեւ գրու աւերակի,*
*Վասն այնորիկ երգեմ ձայնիւ ցաւալի*[13]*։*

## Գ. ՈՒՐԱԽՈՒԹԵԱՆ ՏԱՂԵՐ

*Ասոնցմէ դժբախտաբար միայն մէկ հատ կայ Թ. 1042 Տաղարանի մէջ եւ է հետեւեալը՝*

---

[11] *Նագարեանց, անդ էջ* 89։
[12] *անդ էջ* 89։
[13] *անդ էջ* 90։

ԵՐԳ ՈՒՐԱԽՈՒԹԵԱՆ (ՅԱՐՄԱՐ ԲԱՐԵԿԵՆԴԱՆԻՆ) Ի ԳՈՑՆ, ՈՐ ԱՍԷ, ՕՏԱԼԱՐ, ՕՏԱԼԱՐ, ՎԵՐԱՆ ՕԼԱ

Թ· 1042 բդ· 344ա

*Իսկ արդ մեք սիրելիք, սիրով զմայլեսցուք,*
*Եւ ձայնիւ ցնծութեան եղանակեսցուք,*

*Յիսուսի մեր Փրկչին գոհութիւն տասցուք,*
*Զի շնորհեաց մեզ այսօր սոյն ուրախու–*
*թիւն,*
*Բարեպէս վայելել զայս ուրախութիւն:*

*Ուրախութեամբ մեծաւ արդէն ցնծասցուք,*
*Զանազան բարիքս այս մեք վայելես–*
*ցուք,*

*Հանուրց ստեղծողին զփառս առաքեսցուք,*
*Զի շնորհեաց մեզ այսօր սոյն ազնուու–*
*թիւն,*
*Հոգեզուարճ վայելել զայս ազնուու–*
*թիւն:*

*Ազնիւ եւ քաղցրահամ գինեաւ զուարճաս–*
*ցուք,*
*Բայց քան զչափն աւել ի վեր մի անց–*
*ցուք·*

*Նուրբ մտօք նայելով զմահ Տեառն պատմես–*
*ցուք,*
*Զի այսու մեզ շնորհեաց նոր նորոգու–*
*թիւն,*

Վասն որոյ հրրճուեսցուք ընդ այս նո–
րոգութիւն:

Նորոգ սիրելութիւն արդ մեք ըստասցուք,
Զթմրեալ սէրն մեր ի վեր զարթուսցուք·

Իսկ զպատուէրն Յիսուսի ի միտ մեր առ–
ցուք,
Առ յիրեարս ցուցուք սէր եւ սիրելու–
թիւն,
Զի այսու յայտ լինի Տեառն սիրելու–
թիւն:

Սիրովն աստուածային զսիրտ մեր վառես–
ցուք,
Զկենցաղոյս վայելմունքն երագ վարկես–
ցուք,

Է(ի)ւ ամք մեր այս է (դեղձառել) փութաս–
ցուք·
Զի այսու յայտ ածի թուարկութիւն,
Փառք Տեառն որ հասոյց զմեզ ի սոյն
լրութիւն[14]:

Գրուած է ԴԵՂՁԱՌԵԼ թուին (Դ — 4 + Ե — 5 + Ղ — 90 + Ճ — 100 + Ա — 1 + Ռ — 1000 + Ե — 5 + Լ — 30 = 1235 + 551 = 1786):

Կը խորհիմ՝ այս երգը նոյնն ըլլայ Ծ. Նազարեանցի Յովհ. Կարնեցւոյ «Բոլոր երգերի ցանկին» մէջ յիշուած սա սկզբնատողերով՝ Իսկ արդ մեք, սիրելիք, սիրելով...:

[14] Ոսկեան, անդ 380:

Յովհաննէս Կարնեցին, ինչպէս իր կենսագրութեան մէջ նկատեցինք, բաւական երկար ժամանակ գտնուած է Ս. Երկիր եւ այն՝ մասնաւորապէս Երուսաղէմ, ուր եղած է «աւերածու եւ աւերակ»: Այցելած է զանազան սրբավայրեր՝ քաղաքին մէջ եւ անկէ դուրս: Հետաքրքրուած է անոնց շինութիւններով եւ ուսումնասիրած անոնց պատմութիւնները, բնականաբար նաեւ աւանդութիւններ լսած: Ներկայ եղած է հանդիսութիւններու եւ իր մասնակցութիւնը բերած: Ունկնդրած է հաւատացեալներու երգն ու աղօթքը: Իր աչքին առջեւ պատկերացուցած է Փրկչին ու անոր հետ յարաբերութեան մէջ գտնուած անձերը եւ յիշած Կենարարին չարչարանքներն ու խօսքերը: Եւ յուզուած է ու ոգեւորուած: Հետեւաբար ջանացած է իր տեսածներն ու զգացածները թղթին յանձնել՝ մտացութենէ փրկելու դիտումով: Գրած է տաղաւորներ, որոնք իր միւս տաղերուն եւ երգերուն հետ համեմատուած՝ եթէ կարեւոր մասով մը չեն կրնար անոնց հաւասարիլ, սակայն դժուարին է համամիտ ըլլալ Նազարեանի թէ «Անկեանք գաղափարներ ունենալու հետ մէկտեղ, տաղտուկ են, ծանրաշունչ եւ զուրկ սիրոյ երգերի համից ու հոտից» (Յովհ. Կարնեցի, Տաղեր, էջ 38):

Մեր Մատենադարանի Թ. 1090 Ձեռագրին մէջ այն տաղաւորներէն քանի մը հատ արտագրուած են:

1. Թղ. 103բ: Ի վերայ սրբոյ Ցակոբեանց գերապանծ Աթոռոյն: Ամենապայծառ Իսկ գերբաղձալի:

2. Թղ. 107ա: Ի վերայ սրբոյ Ցարութեան երկնանման տաճարի, ուր կան անօրինական փրկագործ տեղիքն: Արդ երկնանման Իսկական տաճար:

3. Թղ. 110ա: Ի վերայ սրբոյ Ծննդեան տեղւոյն, որ ի Բեթղէհէմ: Իսկ եւ Բեթղէհէմ ի Դաւթայ շինեալ:

4. Թղ. 112ա: Ի վերայ սրբոյ Աստուածածնի սրօրէապամար գերեզմանի, այլ եւ սուրբ Գալիլեայ եւ սուրբ Համբարձման լերանց եւ այլ սուրբ տեղեաց որ անդ: Ամենամաքուր Մօր Տեառն սուրբ Կուսին:

5. Թղ. 114ա: Ի վերայ Տիբերական ծովուն: Տիբերեայ ծովն ի մէջ մեծ դաշտի[1]:

---

[1] Հմմտ. Ոսկեան Հ. Հ., Մայր ցուցակ Բ. էջ 754—55, ուր չէ նկատառնուած — շատ քիչ եւ թերի ըլլալուն պատճառով — թէ Թղ. 103ա. կան հետեւեալ տողերը՝

Քաղաքս այս ազնիւ է թարց պարըսպի,
Բայց ոչ գոյ անդ գող եւ հարամի
Փոքրագոյն լերանց եւ ձորամիջի,
Ցորս մերձ ու մերձ գիւղորայս ունի:

Ի գալն մեր աստ ելաք ցնծացեալ
Հոգւով եւ մարմնով յոյժ ուրախացեալ
Ի (ԼԻՄԲԱԹ) թւոյս ուխտ մեր կատարեալ,
Զայս ստանաւորս խակ շարադրեալ:

Այսքանը: Այս՝ վերջաւորութիւնն է ոտանաւորի մը, որուն միւս տուները դժբախտաբար կը պակսին:

1.

## Ի ՎԵՐԱՅ ՍՐԲՈՅ ՅԱԿՈԲԵԱՆՑ ԳԵՐԱՊԱՆԾ ԱԹՈՌՈՅՆ

Թ. 1090. բդ. 103բ—106բ

*Ամենապայծառ Խոկ գերբաղձալի,*
*Սրբոց Յակոբեանց Աթոռ շնորհալի,*
*Որ ըստ արեւու փայլի լուսով լի,*
*Յարքայից շինեալ եղեւ հիմնաւոր:*

*Բարձր պարապաւ Զքնաղ պատուական,*
*Ծափիղայի պէս քարինքն աննման,*
*Երկաթապատեալ դրունքն յամրական,*
*Կամարաձգեալ վերուստ բարաւոր:*

*Գմբէթայարակ կայ Պայծառ յարակ սրբին,*
*Աթենատարաս տաճարք երկնային,*
*Իրաւի ասեմ՝ աստղալից երկին,*
*Բազում կանդեղօք փայլի լուսաւոր:*

*Դիրք լայնատարած է մեծ կալուածի,*
*Յաջ յահեակ կողմանց յորլս տարածի,*
*Քառակուսի ձեւով յայն պարայածի,*
*Տեղիքն բարձր եւ յոյժ փառաւոր:*

---

*Զի այլուր արդէն արտայայտուեցայ թէ Յով. Կառնեցւոյ ուխտագնացութեան եւ Ս. Տեղերու նուիրուած ոտանաւոր բովանդակող Ձեռագրէ մաս մը — 12 թուղթ, ծաւալով ու գրով տարբեր — գրուած է Գրիգոր Օշականցիին գրութիւնները պարունակող այս — Թ. 1090 — Ձեռագրին մէջ եւ անոր հետ վերջին շրջաններու կազմուած:*

Եղեալ կայ հիմն Տեառն եղբօր Մարմին,
Յակոբայ երջանկին ներքոյ սեղանին,
Պատկերօք նրկար որմունքն[1] սորին,
Որով պարծիմք ի մէջ ազգաց բիւրաւոր :

Զգիրք գլխոյն պատուական Նըշանագրեալ,
Սուրբ Առաքելոյն Յակոբայ ընտրեալ,
Յաջակողմ որմոյն գմբէթյարկեալ,
Բուրէ սուրբ Տեղւոյն հոտ անուշաւոր :

Է եւ մերձ սորին Օրհնեալ որմն, յոր կայ
Տապան ճգնաւորին Մակարայ,
Ուխտաւոր անձինք անդ առեն մեղայ,
Խոստովանահօրն լինին զղջաւոր :

Ըստեփանոսի Տաճարն անուան,
Որ վարդապետաց է նա կայարան,
Միաբանութեամբ անդ յաղօթս կան,
Երբեմն նստեալ լինին դիւրաւոր :

Թաղապարդ սեղանք Առ վերին կողման,
Բարձրագոյն խորանք, որք յոյժ պատուա-
կան,
Պետրոս եւ Պօղոս Առաքելք ցնծան,
Ըստ պատւոյ իւրեանց կան ահեղաւոր :

Ժողովուրդք գիտեալ Բախալի սրտիւ,
Զորոյն Սարգսի տաճարն ազնիւ.
Ընդ որոյն Մինասայ յարկին ի պատիւ,
Համբուրօղք լինին սրտիւ դիւրաւոր :

---

1. Բն. որմունքն :

Իսկ երկու սեղանք է յոյժ բարձրագոյն ,
Սուրբ Խաչի անուան եւ սուրբ Համբարձում ,
Կան հանդէպ մխեանց կամարաց կանգուն ,
Անդ եղօղ անձինք լինին հիաւոր :

Լուսաձեւ ունի Յահեակն տաճար մի ,
Սուրբ Էջմիածնի անուան ցանկալի ,
Երեք սուրբ քարինքն են անդ շնորհալի
Փայլին բատ լուսոյ կարի լուսաւոր :

Խորան հրաշալի Որ խիստ գեղեցիկ ,
Եւ տաճարն այն է կարի փոքրիկ ,
Սուրբ Հողի անուամբ կայ անդ ի տանիք ,
Համբուրօղք լինին սրտիւ դիւրաւոր :

Ծագ յարեւելեան Հիմնեալ տաճար մի ,
Սուրբ Թորոս անուան քաջ զինաւորի ,
Տարաթոջն յերկիցս Պատարագ մատչի ,
Ուխտաւորք լինին անդ աղօթաւոր :

Կայ եւ տաճար մի Արտաքոյ կողման ,
Հրեշտակապետի կառուցեալ անուան ,
Ուր բանտն առաջին եւ սուրբ ծառն այն ,
Բերանարաց քարինքն յարկին պատուաւոր :

Հրաշալի վանք մի Նոյն կոչի Փրկիչ ,
Բանտն երկրորդ է անդ վէմն կափարիչ ,
Ուր Պետրոս լալովն լեալ հողոյն դաիչ ,
Պատրիարգունքն անդ ննջեն շիրմաւոր :

Զրիւք Հողոյն լցեալ Նրբիմաց Արհիք ,
Եղխակադասունք կարի երջանիկք ,

Փայլի յԱթոռջս տիրոյնք պանծալիք,
Իբր աստեղս երկնից ճառագայթաւոր։

Ղամբարանման Ի ներքոյ փայլին.
Ծայրագոյն Պետքն միշտ քաղցրաձայնին,
Հանգոյն Հրեշտակաց սուրբ եղանակին,
Զունկընդիրս ինքեանց առնեն զմայլաւոր։

Ճոխ եւ պանծալի Սոցունց գումարին
Կարգեալ գլուխ եւ Դէտ երջանիկ Արհին,
Սրբազան Հայրըն մեր գերյարգելին,
Որ եւ Պատրիարգ յոյժ հռչակաւոր։

Մեծ գինաւորին է նա համանուն[2],
Որ տօնի մեծ պահոց նախկին շաբաթուն.
Աստուածապարգեւ, ըստ մեր բարբառոյն.
Իրաւի այս անուան է արժանաւոր։

Յարգոյ եւ ազնիւ Կայք իւր բարեկարգ,
Ընտիր եւ մաքուր ունի վարք եւ բարք,
Սիրօղ աղօթից սաղմոսանըրբուաղ,
Ընդունակ գոլով՝ շընորհացն երկնաւոր։

Նուիրականք ունի Արհիք պանծալիք,
Հանճարեղ գիտունք եւ ճոխ բարունիք,
Յօրարս աշխարհի վիճակս անուանիք,
Գնան անդ լինին նոցա խրատաւոր։

Շնորհազարդ համեստ Դասք Սարկաւագաց,
Եւ պարկեշտասուն վարժեցեալ Դպրաց,

---

[2] Թէոդորոս Բ. Վանեցի. Պատրիարք Երուսաղէմի (1800—12), յաջորդ Պետրոս Եւդոկիացւոյ։

Որք ունին Սահման պաշտօնի կարգաց,
Անխափան լինին օրհնաբանաւոր:

Ունի եւ Թարգման Նուրբ հանճարով այր,
Որ տիւ եւ գիշեր է նա հոգատար,
Սրբոյ Աթոռոյս լինիլ շինարար,
Ջանասիրութեամբ իւր արդիւնաւոր:

Զքնաղ գիտութեամբ Երեւելի է,
Զակիթ բանաւորաց պատասխանող է,
Յաչս ամենեցուն յոյժ սիրելի է,
Որ Անուամբ իւրով է աւետաւոր:

Պայծառ տայլիք Յանկալի խցոք
Ճառ գործակալօք եւ վերակացօք,
Բարերոյս այդօք, այլ եւ պարտիզօք,
Ճրքեղ Աթոռս է յոյժ վայելչաւոր:

Ջերմեռանդ սիրով Խիւսեմ պատմութիւն,
Աւետեմ ազգիս մեր ուրախութիւն,
Զի սուրբ Աթոռս է Հայոց պերճութիւն,
Երանի է այնց, որ դան ուխտաւոր:

Ռետին քաղցրաշող Որ եւ բարեհամ,
Ի սա գտանի շնորհ բազմազան,
Եւ մեղաւորաց հոգւոց դեղ բուժման,
Սրբոյ Աթոռոյս հնարք բիւրաւոր:

Սորին համբաւն իսկ Յոլորտըս հնչէ,
Յունկս ամենեցուն բատ փողոյ գոչէ,
Ըղձիրելիս իւր առ ինքըն կոչէ,
Եւ դառնելիս իւր առնէ հեռաւոր:

Վայելուչ ձրիւք Ամէն պարգեւօք,
Սիրօղքն սորին լընանին բարեօք,
Աստ եւ հանդերձելոյն երեւին փառօք,
Ի մէջ ամենից լինին պատուաւոր:

Տենչալի տաճարք Սորին գեղեցիկ,
Բոլոր շրջապատ սուրբ եկեղեցիք,
Յորս պաշտօնի կան հրեշտակք եւ մարդիք
Համապատ լինին փառաբանաւոր:

Բամք ժողովրդոց Աստ ամենայն օր,
Տեսանեն պատարագ սուրբ Գառին հզօր,
Ընկալնուն զշորհս նորին առատօր,
Հոգւով եւ մարմնով լինին հրճուաւոր:

Ցանկացօղք սորին Ցնծութեամբ դիմեն,
Ի սար յաշխարհաց շատ միշտըս կրեն,
Գան համբերութեամբ աչօք տեսանեն,
Այլ վայելչութեամբ լինին բերկրաւոր:

Իւսօղս անարժան Ես կարի յետին,
Յոյժ վառեալ եղէ արդ սիրով սորին,
Որ եւ գրեցի զվէպս ճառին.
Եղեալ մշտապէս սրտի բղձաւոր:

Փառս մատուցուք Արարչին մերոյ,
Որ սուրբ Աթոռս ետ ազգիս հայկազնոյ,
Նա պահեսցէ զսա ընդ իւր հովանւոյ,
Շքեղ եւ պայծառ յոյժ հաստատաւոր:

Քաղցրասիրտ յորդորք Լսօղք սոյն բանիս,
Ողորմի տացէք ինձ անարժանիս,

*Որ գրեցի զատ (ՄԱԾԲԱՌ) սոյն թուիս․*
*Պատմիչ խակ լինի մջանջենաւոր :*

*Գրուած է ՄԱԾԲԱՌ թուին (Մ — 200 + Ա — 1 + Ծ — 50 — Բ — 2 + Ա — 1 — Ռ — 1000 = 1254 + 551 = 1805) :*

*Տուներու գլխագիր միջնատառերը կը կազմեն «Ի չղնտ նոտարէ Յովաննիսէ Կարնեցւոյ ասացեալ» :*

2․

Ի ՎԵՐԱՅ ՍՐԲՈՅ ՅԱՐՈՒԹԵԱՆ ԵՐԿՆԱՆՄԱՆ ՏԱՃԱՐԻՆ․ ՈՒՐ ԿԱՆ ՏՆՕՐԻՆԱԿԱՆ ՓՐԿԱԳՈՐԾ ՏԵՂԻՔՆ

Թ․ 1090․ թղ․ 107ա—109բ

*Արդ երկնանման Խսկակյան տաճար,*
*Սրբոյ Յարութեան, որ նա ես մեղ ճար,*
*Փրկագործ տեղիքն որ աստ են ի դու-*
*մար,*
*Այնց համբոյր ձօնեմ ես արդ խնկաւոր :*

*Թետին բուժարար, Յերկնից իջեալ աստ,*
*Յերկնաւոր բժշկէն, որ վեհ դերխմաստ,*
*Հոգւոց թշնամւոյն պարտեցին սաստ,*
*Փրկարար գործիք եղեն ահաւոր :*

*Ի վեր ի յերկինս Ելանեմք սովաւ,*
*Տեսլեամբ Փրկողին զմայլիմք մեք նո-*
*վաւ,*

Մշտապէս վայելեմք, հրճուանս որ ան-
բաւ,
Եւ լինեմք նորին սիրով զուարճաւոր ։

Պատմանատեղին Տեսլեամբ սոսկալի,
Ահեղ հրեշտակաց եւ մարդկան սեռի,
Զոր ի համբուրելն անձն մեր սարսի,
Ըստ որում է տեղի յոյժ ահեղաւոր ։

Այլ եւ ուշաթափ Նմին մերձ Տեղի,
Յորում Տիրամայրն ուշաթափ լինի,
Զոր մինչ համբուրեմք սիրտ մեր ճըմ-
լոտի,
Եւ այնու լինիմք կարի ողբաւոր ։

Տեղին խուզարկեաց Են սեղան կազմեալ,
Է ազգիս մերոյ այն իսկ յատկացեալ,
Որ մշտապէս անդ պատարագ մատչեալ,
Եւ ամենեքեանս լինիմք հրճուաւոր ։

Իսկ եւ Վերնատունն Անուանեալ տեղին,
Ի բարձրաւանդակ վերին կամարին,
Որ երաշխաւոր սուրբ Աստուածածին,
Է եկեղեցի մեր հրաշաւոր ։

Ի անդկից կենսատու Լուսաւորչի Շիրմին,
Փոքր տաճարին է, որ Ղպտաց ազգին,
Արեմաթացւոյն մատուռն դէմ Նորին,
Որով Ասորիք լինին մասնաւոր ։

Եւ հիւսիս կողման Յոր պարտէզն եղեալ,
Ուր Մագդաղենացւոյն Տէրն երեւեալ.

Սա է Յունկաց ազգին յատկացեալ,
Դէմ Նորին ժամ մի փառաւոր:

Եւ դէպ յարեւելս Ուր բանտն երրորդ կայ,
Ի ծնկաց Փրկչին հալեալ վէմն անդ կայ,
Զսոսա տեսանելն անձրն մեր սոսկայ,
Փառք Տեառն, որ է Ներող թագաւոր:

Բատ սեղանն որ անդ Հուպ է առ սըմին,
Ղունկիանոսի հարիւրապետին,
Որ սեպհականեալ է Յունաց ազգին,
Պատուի ամենից հոգունականաւոր:

Կայ անդ սեղան մի Այն իսկ հրաշալի,
Որ կոչի հանդերձ բաժանման տեղի,
Սեպհական յատուկ է մերս ազգի,
Եւ այսու լինիմք ուրախաւոր:

Բառեալ չարս է դուռն Նոյն մեր տաճարին,
Որ է ճգնարան սուրբ Լուսաւորչին,
Լ աստիճան է եւ էջ Նորին,
Երբեմն անդ լինիմք փառաբանաւոր:

Պարեն հրեշտակք Ներ յայն միւս յարկին,
Խորայէջ վիմափոր գլուխ խաչի տեղին,
Դշխոյն Հեղինէին ի ցրել գխնձին,
Որով ի գլուխ եկն փայտն փրկաւոր:

Անտի ի վեր պամք է սեղան Յունաց,
Փուշ պսակի կոչի ի բազում ազգաց,
Սիւնն յոր նստուցին զՏէրն հրեշտակաց,
Ի ներքոյ սեղանոյն պատուի փառաւոր:

Գողգոթայն բարձր Սաստիկ սոսկալի
    Տարածման տեղին այն սարսափելի,
    Ուր խաչեցին զՏէրն կրիւք անտանելի,
    Դողացին արարածք յոյժ սաստանաւոր:

Ուր եւ սուրբ Արիւնն Ծորեալ եւ հոսեալ,
    Մինչ զագաթն Ադամայ ի ներքս հա-
    սեալ,
    Որ կայր ի ներքոյ լերանըն թաղեալ,
    Վէմն պատառեալ կայ անդ ահաւոր:

Ի անման դրիւք Ոստ վայելչական,
    Աշխարհամատուռն տաճարն տենչական,
    Անդ է սիրտ երկրի բատ վկայեցման,
    Ցոյնք անդ ժամ առեն յորդեալ ձայ-
    նաւոր:

Թաղ ամենեցուն Ցոյժ գեր հրաշալի,
    Կենսատու գերեզման Փրկչին Յիսուսի,
    Որ յարեաւ ցուցաւ Մօր իւրոյ կուսի.
    Ապա Առաքելոց դասուց խմբաւոր:

Ի մէջ գաւթի անդ Է վէմ Հրեշտակին,
    Որ նստեալ ձայնէր զյարութիւն Փրկչին,
    Ի ներսն եւ ի դուրսն շատ կանդեղք
    վառին,
    Զատկէ ի Զատիկ լինի լուսաւոր:

Ի աղօթիւք հայցմամբ Կենդանի վկային,
    Սրբոյն Գրիգորի մեր Լուսաւորչին,
    Լոյսն յերեկոյին ճրագալուծ զատկին,
    Սուրբ գերեզմանէն բղխի հրաշաւոր:

Նախ Յոյնք ապա մեք Այլ եւ Ասորիք,
Ցնծակից լինին Հայկէշք եւ Խաղտիք,
Ընդ Յունաց լինին նաեւ Վրացիք,
Միախումբ սիրով լինիմք միաւոր:

Սիրով միաբան Ռամք սոյն ազգաց,
Լցեալ խնդութեամբ այսու հրճուանաց,
Որով ակն ունիմք անանց բերկրանաց,
Հաստանիլ կենաց մշտնջենաւոր:

Որ եւ ի պատիւ Նոր այս ցնծութեան,
Յայն գիշերն անդ կայն փառաբանու-
թեան,
Քանզի շնորհիւ սուրբ յարութեան
Սրբեալ ի մեղաց լինիմք մաքրաւոր:

Իւսեալ ի թափօր Եղանեն դաս դաս,
Իւրաքանչիւրքն ի չարս անպակաս,
Ըզգեցեալ ըզգեստ ծանրագին եւ խաս,
Փայլին շողշողեալ յոյժ ճաճանչաւոր:

Ռաբունապետըն Յանկալի հայր մեր,
Սրբազան պատրիարքն վեհըն գեր ի
վեր,
Ըզգեստաւորեալ թագիւ ակնայեռ,
Յորոց ցոլք ծագին ճառագայթաւոր:

Բազում պանծալի Եւ երջանիկ Արհիք
Այլ եւ ծայրագոյն յարգոյ ռաբունիք,
Պճնազարդեցեալ յոյժ շնորհալիք,
Զոյգ զոյգ ընթանան իբր պարաւոր:

Տեսեակ եւ տեսեակ Ոսկին զարդարիլ,
Սարկաւագունքն շապկով ճոխ պճնիլ,
Ոսկեայ աշտանակ, բուրվառ ձեռս ունիլ,
Զօնեն սուրբ տեղեացն խունկս անու-
շաւոր :

Եւ Դպրացն դասք Յոյժ ճոխազոյն կան,
Ճերմակ հանդերձիւ իբր աստեղս ցոլան,
Ժ եւ Զ խաչ վառք, որ նախ ընթանան,
Առաջի սրբոյ Խաչին ահաւոր :

Ղամբարավառ դասք է հանդէսն համայն,
Առ այն հիանան տեսօղքն ամենայն,
Զսուրբ գերեզմանուն յերկիցս շուրջ
զան,
Միշտ այսպէս տանեն Թափօրք խմբա-
ւոր :

Ելանեմք անտի Բերկրութեամբ սրտի,
Գամք տաճարն Յոհաննու Աւետարանչի,
Սիոնն, յոր կապեցին զՍտեղծօղքն
երկնի,
Կէսն անդ Սեղանին(*) կայ հրաշաւոր :

Արդ յոյս սուրբ Տեղիս, Առ որս շնորհ
վերին,
Հրեշտակացն հոյլք ելեւէջս ունին,
Զփրկագործ տեղեօքն միշտ պարունա-
կին,
Շրջապատելով լինին օրհնաւոր :

Ցնծութեամբ սրտի Նորող գրեցի,
Ի (ԼԻՄԲԱՌ) թուոյս զաս յօրինեցի,
Դիմախոնարհ ձեզ Սիրով աղերսի,
Որ յիշման առնէք զիս արժանաւոր:

Գրուած է ԼԻՄԲԱՌ թուին (Լ — 30 + Ի — 20 + Մ — 200 + Բ — 2 + Ա — 1 + Ռ — 1000 = 1253 + 551 = 1804):

Տուներու սկզբնատառերու առաջին գրերը կը կազմեն՝ «Առ ի պատիւ եւ երկրպագութիւն սուրբ տեղեացն» եւ Միջին գլխատառերը՝ «Ի յետնեալ Յոհաննէս ծ(ա)ռ(ա)յէ է բանս»:

3.

Ի ՎԵՐԱՅ ՍՐԲՈՅ ԾՆՆԴԵԱՆ ՏԵՂԻՈՅՆ, ՈՐ Ի ԲԵԹՂԷՀԷՄ

Թ. 1090. թղ. 110ա—111բ

Իսկ եւ Բեթղէհէմ Ի Դաւթայ շինեալ,
Եւ ի յիւր անուն ըղնա անուանեալ,
Այժմ Յոյն եւ Ֆռանկք են անդ բնակեալ:
Դիրք նորին փոքր՝ խիստ գեղեցկացեալ:

Պայծառ վանքն է աստ Յոյժ հրաշագունեղ,
Սրբոյ Ծննդեան Փրկչին մեր ահեղ,
Տաճարք լուսալից եւ յարկ շնորհալեց,
Եւ եկեղեցիք բարձրաբերձ չքեղ:

Ամրագոյն դրամբք Երկաթապատեալ
Ներ Դուռթին Ծ · սին կայ յեցուցեալ ·
Անտի մտանիմք Տաճարն գոլեալ ,
Որ է պանծալի պայծառազարդեալ :

Տեղւոյն Ծննդեան Տիպն գեղեցկագին
Կամարեալ դրամբք ձեւըն խորանին ,
Ժ·Բ աստիճան իջանէ յայրին
Ելքն Ժ եւ Զ·է միւս կողմին :

Իսկ սեղանն , որ անդ , Ի ձեռս է Յունաց ,
Ուր ծնաւ Փրկիչ Տէրն մեր փառաց ,
Ներքոյ խորանին պատուեալ ի բազմաց ,
Համբուրեմք բազմամբ զնոյն տեղին
կենաց :

Ի դէմ այն տեղւոյն Ներլուսազարդեալ
Սուրբ Մաւրն մէրմէր փոսորակ փո-
րեալ ·
Ներքոյ խորանին պատուեալ ի բազմաց ,
Համբուրեմք բազմամբ զնոյն Տեղի կե-
նաց :

Սրբոց տաճարիս Ծագ հարաւ կողման
Է տաճար մանկանցըն Բեթղեհէմեան ,
Որք ի տղայութեան սրով կոտորեցան ,
Եւ եղեալ վկայք Փրկչին ծննդեան :

Ծոց նոյնոյ այրին Ռահի անկիւնին ,
Ասի գերեզման մօրն Եւային ·
Ուր փոքր քար մի կայ այնմ Տեղին ,
Անտի գամք ի կողմ վերին կամարին :

Նոյն բարձր տաճարն Յունաց վիճակեալ,
Յորում ժամ առեն յոյժ քաղցրաձայ-
նեալ,
Գոն եւս տեղիք Ֆանիկայ կալեալ,
Զորս համբուրեմք մեք ուխտաւորեալ:

Ներ այս սուրբ վանիցս Հայոց մերս ազգի
Գայ եկեղեցի՛մ՝ բարձրագոյն տեղի
Հանդերձ օտայիւք եւ տուն տրնտեսի.
Սեղանատուն եւ այլն բառ կարգի ունի.

Դուրս զամք ի վանիցս՝ Առ հարաւ դիմեմք,
Բատատունք պահած այրըն մըտանեմք,
Մոգուց եկեալ տեղըն անդէն գտանեմք,
Զերմեռանդութեամբ զնոյնան համբու-
րեմք:

Ելեալ անտի դուրս Նորին յանդիման,
Է տեղի մի անդ կոչմն արեւելեան,
Ուր հովիւք լըւան ձայն Հրեշտակական
Եւ Փառք ի բարձունս երգեցին հետայն:

Աւուր հրաշալի Նա իսկ Ծննդեան,
Ծրագալուցի, որ է օր Խթման,
Ուխտաւոր անձինք լինիմք խառնխու-
թեան,
Հանդիսին եւեալ զամք ի յուխտ սորայն:

Նաեւ Միաէլլիմն Էրուսաղէմի,
Բազում զինուորօք յառաջ անկանի՝
Թօփով թըմբուկով հարմամբ նագարի,
Մեծ Տօնամայիւ հանդիսաւորի:

Տիր մեծապատիւ Նոյն Արհիապանծ
Ցարդս Պատրիարգ Հայր մեր վեհա–
պանծ ,
Գայ բաղում Արհեօք պճնեալ գերազանց ,
Եւ Վարդապետօք՝ անուանի արանց :

Եւ լինի Համայնց Օր ուրախութեան ,
Բայց Ֆէյլահք ոչ տան հանգիստ դի–
րութեան ,
Զամանս յուղտս բարձեալ հանեն ի մա–
փայն ,
Զայլս ի յէշ ւի ձի հեծուցանել ջանան :

Ղօղուն հրաշք մի Տեառնի տաճէն ,
Մեռանիլ չկայ աղաց հասակէն ,
Վասն կատարելոյն ի Հերօվդիէն
Որք իրր չնորհ հայլք մանկանց չառք են :

Ելեալ զան ի դէմ Առ ճանապարհին ,
Ջոկ ջոկ եւ դաս դաս , պար առեալ
կանգնին ,
Հաճի՛ու առեն եւ Տէր ողորմեան ,
Խնդալով խմբեն ըստ իւրեանց ծիսին :

Անդ օր Ծննդեան Բամեալ կատարի ,
Եւ Մկրտութեան ընդ նմին տօնի ,
Եւ ամենեքեան լինիմք զուարճալի ,
Սեղանն վայելեալ յոյժ ուրախալի :

Ցնծութեամբ մեծաւ Էլք լինի դարձեալ
Եւ ի սուրբ Յակոբ Աթոռն դիմիլ կայ ,

Ու (ԲԱՌԱԼԻՄ) թւոյս սա չարադրեալ
Ի՛ի ընթերցողացդ ողորմի խնդրեալ:

Գրուած ԲԱՌԱԼԻՄ թուին (Բ — 2 + Ա — 1 + Ռ — 1000 + Ա — 1 + Լ — 30 + Ի — 20 + Մ — 200 = 1254 + 551 = 1805:

Տուներու սկզբնատառերը կը կազմեն՝ «Ի պատիւ սրբոյ Ծննդեան տեղեաց», իսկ միջ–նադլխագրերը՝ «Ի յետին ծառայ Հաննէ նո–տարէ»:

4.

Ի ՎԵՐԱՅ ՍՐԲՈՅ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ Ի ՍՐՕԲԷԱԳՈՒՄԱՐ ԳԵՐԵԶՄԱՆԻՆ· ԱՅԼ ԵՒ ՍՈՒՐԲ ԳԱԼԻԼԵԱՅ ԵՒ ՍՈՒՐԲ ՀԱՄԲԱՐՁՄԱՆ ԼԵՐԱՆՑ ԵՒ ԱՅԼ ՍՈՒՐԲ ՏԵՂԵԱՑՆ ՈՐ ԱՆԴ

Թ· 1090 թղ· 112ա—14ա

Ամենամաքուր Մօր Տեառն սուրբ Կուսին,
Աստուածայարեալ սրբատուն մարմին,
Ոսա հրճուողութեամբ, Առաքեալք բարձին,
Ի Գեթսեմանի գերեզման եդին:

Իսկ հոյլք հրեշտակաց Քաղցրարձայնէին,
Սրովբէից զուամարք օրհնաբանէին,
Պարք Առաքելոց Որք խմբեալ կային,
Զսուրբ Տիրամայր գովաբանէին:

Այս մեծ ըղձիւ Իխծելով փութայր,
Բարդուղիմէոս յոյժ անտղան գայր,

Տեսութեան Մօր Տեառն Բուրմամբ ընթանայր,
Եւ յոչ ժամանելն կոծալով ողբայր :

Իսկ եւ Առաքեալքն, Որում ցաւակցեալ,
Զմաքուր չիրիմ Սրբուհւոյն բացեալ,
Խաչ գտին զմարմին Տիրամօրն օրհնեալ,
Զի երեք աւուրբք էր նա յարուցեալ :

Մետասանքն ի Փրկչէն Իսկ պատուէր առեալ,
Ըզպատկեր Մօր իւրոյ Բարդուղիմէի տալ,
Օրհնեալ Պատկեր այն Ցնծութեամբ առեալ
Բերեալ Հայաստան յաշխար(հ)ս ամփոփեալ :

Բամք Սերովբէից Դասքն աստէն գումար
Եւ Քերովբէից առեալ շուրջ զպար
Տեառն ծննդի հրաշալի չիրմաւ,
Ընդ մարդկան օրհնեն զԱստուած անդադար :

Սուրբ տաճարն է մեծ, ուր ի ներքս զիմեն,
ԽԸ աստիճան ի վար իջանեն,
Շիրմին մատուռն անդ Ղուպպէն սաղաչէն
Ուրոյն չինեալ կայ, դրունքն զոյգ են :

Իսկ մեզ եւ Յունաց Հրաման գոյ նախնի,
Որ չիրմին վրայ պատարագ լինի,
Բամից Խպտոց գոյ Ասորոց տեղի,
Տաճկաց նամազկեահ կայ յանկիւնս յորմի :

Մտից դրանն յաջակողմն ներքոյ կամարին,
Տիրամօր ծննդաց Տապանքն գետեղին,

Իսկ յահեակ կողման ներս յատուկ յարկին
Է Աստուածահօրն շիրիմն ի նմին :

Նո(յ)նոյ տաճարէն ելեալ վերընթաց,
Գամք վիմափորք այրն, ուր Տէրըն աղօ-
թեայ,
Եւ է ժամատուն նոյն տեղ նուիրաց
Բեմ պատարագի ազգին Ֆռանկաց :

Անտի ելեալ գամք Օթեցեալ տեղին,
Յորում աշակերտքն Փրկչին ննջէին,
Յոր գայր կենարար Տէրըն երկնային,
Մեղադրէր չկալոյ յարթնութեան նոցին :

Լուսալի պարտէզն Այն եւ ցաւալին,
Ուր Տէրն մեր եկաց յաղօթս առանձին,
Սուրբ քրտունքն հոսեալ Բռտ ալորնակին,
Տեղին ըմբռնման է մերձ սմին :

Տեղին ժամագիր Սուրբ Գալիլիայ,
Ուր Տէրն աշակերտաց իշխանութիւն տայ,
Ելանեմք ի լեառն Գեր քան զՄինայ
Համբուրեմք զտեղին ուր լոյս հոգւոյ տայ

Ղամբար լուսալի Բռտեալ սուրբ վերինն,
Յորմէ համբարձաւ Տէրն մեր յերկինն,
Եւ հետք սուրբ ոտիցն են տպեալ քարինն,
Գեղեցիկ մատուռ շինեալ կայ տեղին :

Անդ ուրախ սրտիւ Յօղով արտասուեալ,
Համբոյր մատուցաք սուրբ տեղւոյն օրհ-
նեալ,

*Ցնծայլի զկմօք ի լեռնէն իջեալ.*
*Եւ ի (ՄԻԼԱԲԱՌ) թուույս ատ գրեալ:*

*Գրուած է ՄԻԼԱԲԱՌ թուին (Մ —* 200 + *Ի* — 20 + *Լ* — 30 + *Ա* — 1 + *Բ* — 2 + *Ա* — 1 + *Ռ* — 1000 + 551 — 1805) :

*Տուներու առաջին եւ երրորդ տողերու սկզբնատառերը կը կազմեն՝ «Ա՛ռ ի պատիւ մօր Տեառն Ս. չիրմին եւ այլ սուրբ տեղեաց», իսկ գլխաղիր միջնատառերը՝ «Մաքուր ոտից հող Հաննէ նոտարս գրեցի» :*

5.

Ի ՎԵՐԱՅ ՏԻԲԵՐԱԿԱՆ ԾՈՎՈՒՆ

Թ. 1090 թղ. 113բ—14ա

*Տիբերեայ ծովդ Ի մէջ մեծ դաշտի,*
*Տարածեալ ծփայ կարի ցանկալի,*

*Ի գոյն սաւառնորակ Հանդէպ արեւի*
*Որպէս աղամանդ աչաց երեւի:*

*Բարեհամ է ջուրն, Առողջութիւն տայ.*
*Եւ բժշկէ զայն, որ խիկ հաւատայ,*

*Եւ զի ոտք Փրկչին Նոյն ծովուն վերայ,*
*Երթեւեկ առեալ, որպէս գրեալ կայ:*

*Ռամամբ Յորդանան Նոյն կողմանց գնայ,*
*Յորձանեալ ցոլմամբ յորդեալ ընթանայ,*

Եւ ակունք նորա է մերձ ուստի գայ,
Կարմունձն Յակորայ է վերայ նորայ :

Այն իսկ Տէրն մեր Նոյնոյ ծովափեան,
Ցուցաւ աշակերտաց յետ յիւր յարու-
թեան,
Յորում նորաստեղծ Օրհնեալ հայն այն
Եւ կրակեաղ, որ ձուկն ի վերայն :

Ծովուն յեզերոջ Տէրն մեր նստեալ
Հետ աշակերտաց զայն կերլիս կերեալ,

Որ վիմին վերայ Այնմիկ բոլորեալ,
Կայ մինչեւ ցայսօր վէմն այն պատուե-
ցեալ :

Վայրն այն խստուէտ Բամեալ սահմանին,
Ուր հինգ հացն բաշխեաց հինգ հազար
անձին,
Որ յայժ վայելուչ է տեղ այն վայրին :

Խաչաղմամբ Փրկչին էլեալ մեք եկեալք,
Ի այն կենտարոսր վայրքրս իսկ հասաք.

Ներ (ԾԱՌԱՄԲ) թւոջ ուխտաւորեցաք,
Սրբութեան տեղեացս երկրպագեցաք :

Գրուած է ԾԱՌԱՄԲ թուին (Ծ — 50 + Ա — 1 + Ռ — 1000 + Ա — 1 + Մ — 200 + Բ — 2 = 1254 + 551 = 1805) :

Տուներու առաջին եւ երրորդ տողերուն սկզբնատառերը կը կազմեն «Տիբերեայ ծովուն», իսկ գլխագիր միջնատառերը՝ «Ի Հաննէ նօտարէ է» :

*Ասոնք մաս կը կազմեն Դրունիկցի նահատակներու — Գասպարի, Վարվառէի եւ Մարիամու — վկայաբանութեան եւ արդէն հրատարակուած են (Հայոց նոր վկաները, էջ 671—73), ուստի աւելորդ է անոնց յառաջբերութիւնը: Նահատակներու անունները կը յայտնեն տուներու սկզբնատառերը, իսկ «անուն յարմարողին եւ Թուականն պատնի ի վերջին տան», ուր հեղինակը (երեքին մէջ եւս) կը չեշտէ թէ ինքը «աւելածու Սաղիմայ եւ արեգայ» է (անդ էջ 671, 672, 673):*

*

*Յովհաննէս Կարնեցւոյ տաղերէն եւ տոնանուռներէն բաւական մաս մը գժբախտաբար տուժած է իր բովանդակութենէն ու գրաւչութենէն, դարձեալ տաղաչափական օրէնքներէն ու կանոններէն օձտած, հետեւեալ պատճառներով: Անիկա տէպ ջանացած է հետեւիլ տիրող սովորութեան մը, որ կաչկանդած է զինքը, այսինքն տաղին տուներու առաջին տառերով իր անունը եւ կամ որեւէ նշանակալից կամ որակիչ բառ մը կամ բառեր կազմել: Այս՝ բաւական չէ, նաեւ միջնադրերով բառ եւ նոյն իսկ նախադասութիւն յօրինել: Նմանապէս փոյթ տարած է տաղին վերջին տան մէջ անոր գրութեան թուականը նշանակել, որով վերջին տունը,*

որ աւելի բովանդակալից եւ յուզիչ պէտք էր ըլլալ, աւելի ու աւելի կը գրկուի:

Յովհաննէս երբեմն ուրիշ սովորութենէ եւս փարակուած է: Տաղը գրելու ժամանակ նկատի առած է Թրքական որեւէ եղանակ մը եւ անոր համաձայն բառերն ու չափերն ընտրած: Բայց պէտք է ըսել որ այս առաւելութիւն մը ունէր — հեղինակին անունն ու գրութիւնը կը տարածուէր եւ գուցէ անոր բարոյական կամ նիւթական շահ մըն ալ կ՚ապահովէր:

Ուրիշ պատճառ մը թերութիւններու կը համարիմ միեւնոյն նիւթի՝ սիրոյ մասին չափ տաղերու յօրինումը: Այս պարագան Յովհաննէս Կարնեցին կրկնութիւններու — բառերու եւ ասացուածքներու, զգացում-ներու եւ յուզումներու, կարօտներու եւ կսկիծներու, դէմքի եւ մարսերու նկարա-գրութիւններու — մէջ դարահոս գահավիժ-ժած է:

Սակայն Յովհաննէս Կարնեցին իր չըր-ջանին լաւագոյն — մանաւանդ սիրոյ — տաղասացներէն է: Գիտէ բառերու ընտրու-թիւն ընել եւ հնչումի մասդիր ըլլալ.

Մոլորած ժուռ գալով գուրանալ չունիմ,
Քնանալն աւեն թէ գուր՝ ան ալ չունիմ.
Զորէ ձոր ընկնելով գուրան ալ չունիմ.
Զորս գլխ գետեր առել է՝ գլխ բոլորած:

(Ծ. Նազարեան, Յովհ. Կարնեցի — Տա-ղարան, էջ 68):

Իմ ցանկալիդ, երբ գաս առ իս,
Ճոխանալով, ճոխանալով,
Նոր ցնծութիւն սրտիս ծաղիս,
Ճոխանալով ճոխանալով:

(Անդ էջ 73):

Կ՚ուզէ ճարտար վրձինով ուշադրաւ դէմքեր ու անձեր նկարել.

«Յարմար ձեւով յօրինել ես զանազան
Աչերդ կանդեղ, յօներդ կամար աննման...
Նման սօսի բարձրացել ես հասակաւ,
Գեղեցկացել յոյժ ցանկալի տեսակաւ:

(Անդ էջ 82)

Կրնայ սրտերը յուզել եւ աչքերէն արտասուք հոսեցնել սէրը երգելով եւ կարօտի ու ղարիպութեան տանջանքը զգալով:

Յաչացս իջնու միշտ գետեր,
Սիրոյս հուրն է յորդ գետեր,
Շիջուցանել ոչ կարեն,
Թէեւ կապեն շատ գետեր:

(Անդ էջ 104):

Այրեցաւ իմ լեարդս կարօտով,
Զախրելիս իմ խնդրեմ փութով,
Զի գայ բուժէ նա զիս շուտով.
Լերինք ռահ տուք, թոյլ տուք,
Թո՛յլ տուք, նազելիս գայցէ:

(Անդ էջ 109):

*Կարելի է Շ. Նազարեանցի հետ եզրակացնել. «Անկախ թերութիւններից, Յովհ. Կարճեցին ուշագրաւ եւ ինքնատիպ ժողովրդական բանաստեղծ է, աւելի ճիշտ տաղասաց-երգահան: Նա հէնց որպէս այդպիսին կարեւոր դէմք է ժամանակի հայ գրականութեան մէջ: Յովհ. Կարճեցին իր կեանքով եւ գործերով հանդիսանում է Սայաթ-Նովայից մինչեւ Աբովեանն ընկած ժամանակամիջոցում գրական կեանքը աշխուժացնող գործիչներից մէկը: Նրա էպիկական պոեմներն ու սիրային տաղերը կազմում են նախաաբովեանական հայ գրականութեան անկապտելի մասը» (Անդ էջ 63):*

Գրիգոր արքեպիսկոպոս Օշականցիի ձեռնադրութիւնը կը պարտինք Յովհաննէս կամ Հաննէ Կարնեցի նոտարին: Անոր գրչէն է՝ «Յիշատակարան պատմաբանօրէն վասն ննդեան եւ աստուածահաճոյ վարուց եւ երջանիկ վախճանման առն Աստուծոյ Գրիգորի Արքեպիսկոպոսի եւ շնորհալի Վարդապետի»:

Այս Յիշատակարանը դժբախտաբար ամբողջապէս դեռ տպուած չէ: Ճուշանիկ Նազարեանց[1] անկէ շատ դոյզն մաս մը լոյս ընծայած է: Բարեբախտաբար մեր՝ Վիեն. Մխիթարեան Մատենադարանին Թ. 884 (Թղ. 92ա—97բ), Թ. 885 (Թղ. 98ա—103ա) եւ Թ. 1090 (Թղ. 88ա—93բ) Ձեռագիրները զայն ամբողջութեամբ ունին: Ուստի անկէ կրնամ օգտուիլ:

Յովհաննէս Կարնեցիի այս Յիշատակարանը վստահելի աղբիւր է, վասն զի հեղինակն անձամբ ճանչցած է Գրիգոր Օշականցին եւ անոր հետ լաւ յարաբերութեան մէջ

---

[1] Հմմտ. Ճ. Նազարեանց, Յովհաննէս Կարնեցի, Տաղարան, Երեւան 1962, էջ 9—10, ծն. 2: Գրեթէ նոյն մասը հրատարակուած նմանապէս Հ. Ոսկեանէ. Հմմտ. Ցուցակ հայ. Ձեռ. Մխիթարեան Մատենադարանի ի Վիեննա, Վիեննա 1963 Բ. հտր. էջ 466):

եղած· ուրեմն ականատես եւ ականջալուր, եւ դարձեալ որովհետեւ, ինչպէս ինքը կը հաւաստէ, «Միաբանք սրբոյ Աթոռոյն Էջմիածնի եւ ծերունի վարդապետաց լսեալ գոլով գոլով, յորոց եւ մեք տեղեկացեալ արձանացուցաք աստ սակաւուք» (Թ· 884 Ձեռ· թղ· 92ա)։

Գրիգոր կամ Գրիգորիս բարեպաշտ ծնողքի ուխտի զաւակ է՝ բարեխօսութեամբ Օշականի մէջ թաղուած Հայ Դպրութեան մեծ Ռահվիրային՝ Մեսրոպ — Մաշտոցի։ Ծնած է Օշականի մէջ եւ այն թերեւս է 1756ին, զի ՌՄԽԷ թուականին (1798) «յերիտասարդական հասակի իւր ԽԲ տարւոյ» Կարին քաղաքին մէջ կը մեռնի (Հմմտ· վարը)։ Հայր ու մայր — անուններն ինծի անծանօթ կը մնան — հազիւ եօթը տարի իրենց յուսալից եւ աստուածապարգեւ որդին ծնողական յարկին ու գուրգուրանքի տակ կը պահեն, զի հաւատարիմ իրենց ուխտին՝ զինքը մատաղ հասակին մէջ Էջմիածին կը տանին կամ կը յղեն։ Հոն անիկա «Զարգացեալ եւ զարդարեալ եղեւ, լցեալ գիտութեամբ հին եւ նոր կտակարանաց եւ այլ աստուածային սուրբ գրեացն։ Սուրբ վարուք եւ մաքուր բարուք, համեստ եւ պարկեշտ կենցաղավարութեամբ եւ ամենայն աստուածահաճոյ առաքինութեամբ... փայլեցեալ ի խումբս բարունեաց իբրեւ լուսաւորս ի չորս աստեղաց» (Թ· 884· թղ· 22բ — 93ա)։

Յովհաննէս Կարնեցին լռած է Գրիգորի դաստիարակներու եւ ուսուցիչներու անունները։ Բայց կը հաղորդէ թէ «Գոլով յաւուրս Սիմէոն սրբազան Կաթուղիկոսին, որոյ տեսեալ զբարեսուն վարս երանելի մանկանն Գրիգորի, ձեռնադրեաց զնա ի կարգ կուսակրօն քահանայութեան եւ վարդապետական աստիճանաւ ճոխացուցեալ ի տղայական հասակի» (անդ թղ. 93ա)։ Իսկ Սիմէոնի յաջորդը՝ Ղուկաս Կարնեցի կաթողիկոսը՝ Գրիգոր վարդապետն եպիսկոպոսութեան աստիճանին բարձրացնելով զինքը կ'ուղարկէ «Յուրեք յուրեք տեղիս ի գործ Նուիրակութեան» (անդ թղ. 93բ)։ Թէ այդ վայրերը որո՞նք եղած են, չենք գիտեր, սակայն այս հաւաստի է որ նոյն կաթողիկոսի կարգադրութեամբ Գրիգորիս Կարին կը հասնի իբրեւ Նուիրակ։ Քաղաքին մէջ նոր ոգեւորութիւն եւ հոսանք կը ստեղծուի, զի անիկա իր քարոզներով եւ մանաւանդ կարօտեալներու հետ անձնազոհ անդուլ յարաբերութեամբ ժողովուրդին մտքին ու սրտին կը խօսի «... Բանիւ շնորհաց լուսաւորէր ըզմիտս ունկնդրողացն եւ հասու առնէր խորհրդոց բանից սուրբ Գրոց...։ Մաքուր վարուքն եւ պարկեշտ բարուքն, լռակեցութեամբն եւ ամենայնիւ համեստութեամբն զարմացուցանէր զամենեսեան, մանաւանդ զծանօթացեալսն։ Դարձեալ զտուրս առատս բաշխէր աղքատաց, կերակրէր զքաղցեալս,

խնամարկէր գրանտարկեալս եւ զկեցուցանէր զմերկս եւ յաւուրս ձմերայնոյ աւելի քան զհարիւր չայիէս շնորհեաց մերկ աղքատաց»։ Մինչ ինքը՝ «Զէր սիրող պճնազարդ հանդերձից եւ փառազարդութեան եւ չէր ընդունող բազմախորտիկ սեղանոյ եւ զեղխ ըմպելեաց, այլ զրեթէ աւուրն նկանակ մի հաց ճաշակէր» (անդ էջ 93բ — 95բ)։ Կարնոյ մէջ բաւական երկար ժամանակ կը մնայ եւ իր նուիրակութեան պաշտօնին գործերով կը զբաղի։

Սակայն դժբախտաբար «Յայսմ միջոցին» ժանտացաւի համաճարակը կը սկսի Կարնոյ մէջ տարածուիլ եւ Գրիգորի եղբայրը Պօղոս «ի սոյն ցաւէ» վարակուած կը կնքէ իր աստենականը։ Այս՝ բնականաբար արքեպիսկոպոսին վրայ շատ տխուր ազդեցութիւն կ'ընէ «Եւ ինքն կարի յոյժ երկնչէր ի նոյն ցաւէ»։ Կ'որոշէ Կարնէն հեռանալ։

Գրիգորի օրով եղած մահացաւին մասին Յիշատակագրութիւնները սա՛կս ակնարկութիւններ կ'ընեն. այսպէս՝ «Թուին ՌՄԽԶ Յունիս Ժ. աւուրն Հինգշաբթի եղեւ նոր սկսեալ մահ ի քաղաքն Սալնոյ ձորոյ, որ մականուանեալ Բաղէշ» (Հայաստան 1851. Թ. 8)։ Նոյն թուականին «Եւ եկն մահ աշխարհս Նախիջեւան կաւառն Ագաջիրան (Ագատ Գիլան), Ղափան... եւ բազում գաւառ կոտոր(ե)աց այսպէս» (Ազգր. Հանդ. ԺԲ. էջ 173)։ Անկէ յառաջ «Թվ. ՌՄԽԵ ամին եղեւ

մահ տարաժամ եւ մեռան Հայոց ազգէն է. հարիւր մարդ, ընդ այր եւ ընդ կին» (Սըրուանձտեանց Գ. Վ., Թորոս Աղբար Բ. էջ 470 [2]):

Յովհաննէս Կարնեցին անտեսած է Գրիգոր Օշականցիի Կարին ժամանումի թուականի նշանակումը, սակայն այնպէս կը թուի թէ այդ տեղի ունեցած պիտի ըլլայ 1795ի սկիզբները, եւ կամ նոյնին կէսին: Նոյն տարին Հոկտ. 10ին Գրիգոր կ՚այցելէ Մուտուրկու Ս. Լուսաւորչի վանքը եւ անոր տաճարին «Առաջի սուրբ սեղանոյն, առ ոտս կամարին, որ իջանէ յաջակողմն» արձանագրած է այսպէս՝

«Ի սուրբ վանս Լուսաւորչի,
Եկեալ ի յուխտ իմ Գրիգորի,
Բանի Տեառն պաշտօնէի,
Եւ ծառայից Տեառն ծառայի,
Կարնոյ երկիրս նուիրակի,
Սուրբ գահին էջմիածնի,
Թիւ գալստեան իմ նուաստի,
Այսու գրովք ծանուցանի,
Զի ըստ ամսոց ողջոյն ամի,
Յորելեանն կրկնապատկի,
Եւ մի գարձեալ որոշակի,
Վեց ի նմանէ ի բաց դնի,

[2] Յովհաննէս Կարնեցին այլ ժամանակի մասին կը խօսի իր «Պատմութիւն սովուն Կարնոյ» գրութեան մէջ. (Հմմտ. Բազմավէպ 1884, էջ 119):

Եւ թիւ ամսեան Հոռոմ աղգի,
էր քսաներորդ տասներորդի»

(Անդ թղ. 21ա):

Նոյն տարւոյն Նոյ. 5ին զինքը կը գտնենք Բասենի Ս. Աստուածածնի վանքին մէջ (անդ թղ. 22ա):

Գրիգոր տարափոխիկ համաճարակէն վարակուելու վտանգէն ազատելու եւ իր նուիրակութեան պարտքը այլուր եւս կատարելու համար — Կարնոյ մէջ քանի մը անհրաժեշտ հարցեր կարգի դնելէ յետոյ — անկէ կը մեկնի այլուր. կ՚այցելէ բաց ի վերոյիշեալներէ Կարնոյ դաշտի Ս. Խաչ վանքը, Բաբերդի Ս. Յովհաննէս, Ս. Հրեշտակապետ, Ս. Աստուածածին, Ս. Աստուածամայր, Երիզայի Ս. Սարգիս Զօրավար եկեղեցիները, Եկեղեաց Ս. Ներսէսի վանքին տաճարը, Ս. Գէորգի վանքին, Զարչարանաց Ս. Լուսաւորչի, Ս. Նիկողայոս Սքանչելագործի, Ծաղափայլ Ս. Աստուածածնի վանքերու տաճարները, Դարանաղեաց Կամախ քաղաքի Ս. Աստուածածին եկեղեցին, Դարանաղեաց Ս. Նշանի վանքի տաճարը, Արմտան, Թամզարայ: Կ՚երթայ «ի Պոնտոս քաղաք» (Տրապիզոն), Կիւմիւշխանէ, Կորդուաց գաւառը եւ Մուշի Ս. Կարապետի վանքը:

Գրիգոր արքեպիսկոպոս պարագաներու համաձայն այս վայրերը կարճ կամ երկար

ժամանակ միացած է եւ կարգադրութիւններ ըրած: Իւրաքանչիւր այցելութեան՝ տեղւոյն վրայ յարմար արձանագրութիւն մը կը յօրինէ՝ նշանակելով միանգամայն տարին ու ամիսը: Եւ կը թողու զայն յիշատակ անմոռաց:

Նուիրակութեան պաշտօնն իրմէ շատ ժամանակ պահանջած է եւ յոգնեցուցիչ եւս եղած. զի ան ջանացած է իր գործերը խղճմտութեամբ կատարել եւ գոհ ձգել ժողովուրդն եւ զինքը առաքող Հայրապետը:

Դարանակալ ժանտացաւը դեռ կը շարունակէր իր աւերները, բայց Գրիգորի համար էջմիածնի մէջ սպասող կար, ուստի կը խորհի վերադառնալ Կարին եւ հոգալ «զինչ ինչ պէտս եւ գնալ ի սուրբ գահն էջմիածին» (անդ էջ 95բ): Սակայն «ի գալն իւր ի Նահանգն Բասեն (վերադարձի միջոցին) ի Հերթեւ գիւղն ըմբռնեցեալ եղեւ ի ժանտացաւէն» (անդ թղ. 95բ): Դարմանումի համար կը փութայ Կարին, ուր բժիշկ ու դեղ զինքը չեն կրնար ժանտացաւի ճիրաններէն փրկել: Համակամութեամբ կը դիմաւորէ մահը: Կ՚ընդունի Ս. Խորհուրդները: Իր կտակը Յովհաննէս Կարնեցիին գրել կու տայ: «Եւ պատուիրեաց թաղել զմարմին իւր ի ներքոյ սեմոց դրան դաւթին եկեղեցւոյն, ի յոտնակոխս ամենեցուն եւ չդնել քար ի նշան գերեզմանի» (անդ 96ա): Յետոյ՝ «Ի թուականութեանս մերում ՌՄԽԷ եւ Դեկտեմբերի

իթ», այս է՝ 1798 Դեկտ. 29ին — կը կնքէ իր արդիւնաւոր մահկանացուն: Կարնոյ քահանաներն ու իշխանաւորները նկատի ունենալով անոր արժանիքները՝ չեն յարդեր կտակը, սակայն կը յարդեն գինքը եւ մարմինը «ի կարգս դերեզմանի վարդապետաց» կ՚ամփոփեն (անդ. թղ. 96բ — 97ա):

Գրիգոր Օշականցի «Անձամբն էր բարձրահասակ, բարակ եւ նրբամարմին, երկայներես, կամարայօն, եւ գեղեցիկաչեայ, երկայնրադուկ, եւ երկայնմատունք, ամենեւին հրեշտակատեսիլ, բարբառոյն քաղցրախօս, յամրաշարժ եւ մեծաողի, համբերող եւ աննախանձ» (անդ թղ. 94բ): Տողերէն կը տեսնուի որ յիշութիւնը կրցած է բարեխառնել գուարթութեամբ եւ սիրել զԱստուած ու բնութիւն:

Յովհ. Կարնեցին Գրիգորի կեանք ու գործն իր աչքին առջեւ պատկերացնելով կը հետեւցնէ. «Որոյ վասն կարելի է եւ չէ յանդգնութիւն ասել նմա նորյայտ Շնորհալի եւ կոչել գնա երկրորդ Նարեկացի հրեշտակական վարդապետ» (անդ էջ 94բ):

Օշականցի արքեպիսկոպոսը հակում ունենալով ներանձնական կեանքի՝ իր ժամանակին մեծագոյն մասը տրամադրած է քարոզչութեան եւ ժողովրդեան բարօրութեան, դարձեալ վաղաժամ մեռնելով, չէ կրցած գրական մեծ հունձք մը կտակել: Յովհ. Կարնեցիի վկայութեան համաձայն եղած է

«Յօրինիչ գեղեցիկ երգոց եւ տաղից եւ չարադրող իմաստնալից ոտանաւորաց»:

Անիկա ունի՝ Ա. Տեխլներ, Բ. չարադրած է ոտանաւոր Արձանագրութիւններ եւ Գ. Տաղեր կամ Երգեր:

Անոր բոլոր գրութիւնները (նախ Տաղերը, ապա Արձանագրութիւնները եւ յետոյ Տեխլները, ընդհանրապէս մէկ հատորի մէջ ամփոփուած) հասած են, սակայն տաղերէն ցիրցան կան նմանապէս Տաղարաններու եւ այլ գրքերու մէջ:

Գիւտ քհ Աղանեանց անոր գրութիւններէն ունեցած է օրինակ մը (Արձագանք 1888 էջ 22): Շուշանիկ Նազարեանց Երեւանի Մատենադարանէն յատուկէն կը յիշէ երկու օրինակ (Թ. 6682 եւ 7672. հմմտ. Յովհաննէս Կարնեցի, Տաղարան էջ 9): Առաջին Ձեռագիրը ծանօթ է նմանապէս Վ. Յակոբեանի (հմմտ. Մանր Ժամանակագրութիւններ, Ա. հտր. Երեւան 1956, էջ 585): Տրդատ եպ. Պալեան ծրագրած էր Գր. Օշականցիի Տաղերն իր «Հայ Աշուղներ» խորագրուած երկին Գ. հատորին մէջ լոյս ընծայել, (Հայ Աշուղներ, ժողովրդական հայ երգիչներ եւ տաղասացք, հտր. Բ. Իզմիր 1912, վերջին կողքը նաեւ՝ Տեխլները. հմմտ. Հանդ. Ամսօրեայ 1923, էջ 557), ուստի յայտ է թէ իր տրամադրութեան տակ ունէր զանոնք որեւիցէ ձեւով: Իսկ մեր Մատենադարանին մէջ կան Թ. 884, 885, 1042 եւ 1090 Ձեռագիրները

*(հմմտ. Հ. Ոսկեանի վերոյիշեալ Ցուցակը, էջ* 463, 467, 676, 794) :

*Գրիգորի* Տեսիլները *երեք հատ են (հմմտ. Ոսկեան, անդ էջ* 467), *սակայն իր մահուան ժամերուն ալ «Եղեւ միտքն ի տե-սիլս եւ ասաց, Ահա եկին կաթուղիկոսունք եւ սրբազան հայրապետք հրաւիրեն զիս ըդ-դեստաւորիլ» (Թ.* 884. *Թղ.* 96*ա*) : *Այն Տեսիլներն արտագրուած են մեր Ձեռագիր-ներու մէջ՝ Թ.* 884. *Թղ.* 85*ա*—91*բ*, *Թ.* 885 *Թղ.* 91*ա*—97*բ եւ Թ.* 1090. *Թղ.* 81*ա*—88*ա* *(հմմտ. Ոսկեան, անդ էջ* 466, 467, 1090) : *Ասոնց մասին այսքան հակիրճ* :

Արձանագրութիւններ : *Անոնց խորագիրն է. «Արձանագրութիւնք յիշատակաց Տն. Գրի-գորի վ.ի Օշականցւոյ եւ ծայրագոյն եպիսկո-պոսի : Գրեալ ընդ ժամանակս ի շրջագայել տեղիս ոմանս ի քաղաքս եւ ի գաւառս եւ յամենայն վիճակս նոցունց : Յորս շրջեցաւ ինքնին եւ քարոզեաց յեկեղեցիս Հայոց եւ յամենայն ժողովուրդս նոցա : Ի գործս նուի-րակութեան տիեզերական մայր Աթոռոյն Սրբոյ Էջմիածնի : Որ եւ նախ ի բարի ճոխ մայրաքաղաքն Թէոդուպօլիս ունելով ընդ ինքեան զիւղն օծութեան գաստուածագործ Միւռոնն սուրբ : Գերիշխան հրամանաւ եւ բարձրաշուք Կոնդակաւ Տեառն Ղուկասու աստուածազգեաց Հայրապետի եւ սրբազան Կաթուղիկոսի ամենայն Հայոց» : Անոնք* 23 *հատ են եւ անոնց կցուած են դեռ քանի մը*

տօնական գրութիւններ. այսպէս՝ «Գովեստ առ Ս. Աստուածածին, Օրհնութիւն առ Աստուած, Աղերս առ Աստուած, Գովեստ ներբողի առ ընտրեալ երջանիկ եօթանասուներկու աշակերտս Քրիստոսի»։

Գրիգոր Օշականցւոյ այս արձանագրութիւններն ունին որոշ արժէք. անոնցմէ ոմանք կը բովանդակեն պատմական եւ հետաքրքրական կէտեր։ Այսպէս, ինչպէս Գ. քհ. Աղանեանց Զարախափան Ս. Աստուածածնի եկեղեցւոյ արձանագրութեան մասին կ՚արտայայտուի. «Նորանից երեւում է որ այդ ժամանակներում տեղական Հայերի մէջ բնտանեկան կեանքի մէջ մտել էին զանազան վատ սովորութիւններ եւ Հայոց եկեղեցու ծէսերի եւ արարողութիւնների մէջ այն տեղի հոգեւորականները մտցրել էին ինքնակամ զանազան փոփոխութիւններ» (Արձագանք 1888, էջ 23) Դարձեալ Մշոյ Ս. Կարապետի արձանագրութեան մէջ պատմական քիչ տեղեկութիւններ չեն պարփակուած։ Անոնց բովանդակութիւնները կը վկայեն թէ Գրիգոր ազգային պատմութեան լայն ծանօթութիւն ունի եւ գիտէ գործածել յարմար պարագային։

Այս արձանագրութիւնները վերյիշեալ երեք Ձեռագիրներու մէջ ալ արտագրուած են (Թ. 884. Թղ. 20ա—971ա. Թ. 885. Թղ. 27ա—90բ. Թ. 1090. Թղ. 18ա—81ա)։ Իսկ Պոնտոսի Զարախափան Ս. Աստուածածնի

*արձանագրութիւնը Աղանեանց կարեւոր մասով մը հրատարակած է* (*Արձագանք* 1888. *էջ* 23) :

Տաղեր : *Գրիգոր արքեպիսկոպոսի Տաղերու ընդհանուր անուանագիրը կամ խորագիրն է. «Տաղարան վայելուչ եւ գեղեցիկ : Համերական երգարանութեամբ շարադրեալ Տեառն Գրիգորի տրուպ վարդապետի, որ ի գեղջէ Օշականայ նստարանի մեծին Մեսրոպայ Հայոց Թարգմանչի : Առ դրան լուսազարդ եւ աստուածընկալ Մայր Աթոռոյն սրբոյ էջմիածնի : Ի հայրապետութեան Տեառն երջանկագարդ եւ քրիստոսապսակ Կաթուղիկոսին ամենայն Հայոց : Ի փառս միշտ փառաւորեալ Ամենասուրբ Երրորդութեան : Ի թուոջ Փրկչին* 1787 *եւ ի թուին Հայոց ՌՄԼԶ»* (*Թ*. 884 *թղ*. 2*ա*) :

*Հետեւաբար այս տաղերը գրուած են Գրիգորի Կարին գալէն յառաջ եւ այն՝ էջմիածնի վանքին մէջ :*

*Այս տաղերը կը կանխէ Ընծայական մը «Առ երջանիկ Սուրբ Հայրն մեր Մեսրոպ Թարգմանիչ : Ի սկզբան շարադրութեանս ազդեցեալ ի գերահրաշ մեծ իմաստնոյն որ ասէ. Իմաստութիւն է ճանաչել թէ յումմէ՞ է շնորհն : Ի դէպ է ինձ ճանաչել զիմ շնորհատուն զբարեպաշտութեան յարացոյցն զլուսայարփ պատկերն, զպատուեալն ի հրեշտակաց զբարերանեալն յամենայն լեզուէ եւ*

գտքանչելի տիպն ի Մովսիսեան զՍուրբն Մեսրոպ․․․» (Թ․ 884 Թղ․ 2ա)։

Գրիգորի Տաղերը ամփոփուած են մեր Մատենադարանի վերոյիշեալ երեք եւ Թ․ 1042 ու Երեւանի Պետ․ Մատենադարանի Թ․ 7672 եւ 6682 Ձեռագիրներու եւ ուրիշ Գրչագիրներու մէջ՝ ամբողջապէս կամ հատընտիր, որոնք այս վերջին Մատենադարանի եւ ուրիշ Գրադարաններու մէջ կը գտնուին (Հմմտ․ Նազարեանց Շ․, Յովհաննէս Կարնեցի, էջ 9)։ Անոնց հրատարակութեան համար կը գոհանամ ակնարկուած վեց Ձեռագիրներով, որոնցմէ Երեւանի Մատենադարանի Ձեռագիրներու լուսանկարներն ընդունած եմ Տիար Լ․ Խաչիկեանէ, որուն հրապարակաւ կը յայտնեմ անկեղծ շնորհակալութիւնս։ Կանխեմ յայտարարելու որ Ձեռագիրներէն ոմանց բուԹերը նկատի չեմ առած (եւ ստորակէտով փոխանակած), դարձեալ հրամայականի չեշտը՝ անտեսած, գի արդէն կ'ենԹադրուի։ Իբրեւ բնագիր առած եմ՝ Թ․ 884 (= A) եւ համեմատած՝

Թ․ 885 = B.
Թ․ 1090 = C.
Թ․ 1042 = D.
Թ․ 6682 = E.
Թ․ 7672 = M. Ձեռագիրներու հետ։

## Ա.

### ԳՈՎԵՍՏ ԱՌ ՍՈՒՐԲ ՀԱՅՐՆ ՄԵՐ ԳՐԻԳՈՐԻՈՍ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ՝ ԱՍԱՑԵԱԼ ՈՒՐՈՒՄՆ ՀՍԿՈՂԻ ԲԱՆԻ ՏԵԱՌՆ ՍՊԱՍԱՒՈՐԻ

*Գովեալ վկայդ Յիսուսի, Յիսուսի,*
*Սուրբ նահատակ կենդանի,*
*Արթուն անուն ցանկալի՝ նազելի։*
*Գրիգոր ազնիւ սուրբ հայր մեր, սուրբ հայր մեր,*
*Ազգիս Հայոց լուսաբեր,*
*Առ Տէր վասն իմ միջնորդ լեր յարաժամ։*

*Բամեալ մարդկան քարոզեալ, քարոզեալ,*
*Ազգիս քոյոյ տառապեալ,*
*Դուռն կենաց մեզ բացեալ աննման։*
*Գրիգոր ազնիւ հօտապետ, հօտապետ,*
*Կտակարանաց վարդապետ՝*
*Հայաստանեայց գլուխ եւ պետ՝ աննման։*

*Ձեռագիր՝*

A, *Թղ.* 4*ա*—5*ա*։
B, *Թղ.* 8*ա*—9*ա*։
C, *Թղ.* 3*ա*—4*ա*։
D, *Թղ.* 186*ա*—86*բ*։
E, *Թղ.* 3*ա*—4*ա*։
M, *Թղ.* 3*ա*—4*ա*։

2 *սուրբ նահատակ կենդանի* չունի E։
8 *Ազգիս Հայոց* D։
12 Հայաստանեայցս E (E ստէպ կը գործածէ ինչպէս աստ եւ այլուր՝ գլխագիր «*Արեգակն*», «*Ազգիւ*»։

*Իջմամբ ի խորս Վիրապին, Վիրապին,*
*Հաներ զմեզ ի յերկինս,*
*Ի յօթեւանս Հօր վերին անեղին:*
*Գրիգոր ազնիւ աղաւնի, աղաւնի,*
*Նորոյս որրոյ տապանի.*
*Փրկողին մեր Հօր Նոյի՝ Յիսուսի:*

*Գլխոյն օծեալ համանման, համանման,*
*Կրեցեր զվլիչսս ամենայն,*
*Զարչարմամբք չորեքտասան ժուժկալեալ:*
*Գրիգոր ազնիւ ճոյլ ոսկի, ճոյլ ոսկի,*
*Պատկեր գլխոյն ճշմարտի,*
*Արարածոցս արարչին Քրիստոսի:*

*Որպէս փայլեալ արեգակն, արեգակն,*
*Ճառագայթեալ իբր զփայլակն,*
*Բացեր զհոգւոց մերոց ակն զուաթազին:*
*Գրիգոր ազնիւ Նազելի, Նազելի,*
*Գեր զամենայն պանծալի,*
*Վտակ ազբեր չնորհալի անձման:*

13 *Վիրապի* C:
15 *յերկին* D: *հօր* E:
16 *Աղաւնի* D:
19 *Գլխոյն բամեալ* D:
21 *ժուժկեալ* AM:
25 *արեգակն* ունի մի անգամ՝ C:
26 *զփայլական* C:
27 *հոգւոց մերոց զակն* D:
27 *զուարթին* C:
30 *աղբերց* D:

*Բարունարար ուսուցեր, ուսուցեր,*
*Ջերբեակ լուսոյն անստուեր,*
*Խորհուրդ անհաս ծանուցեր ազգիս մեր:*
*Գրիգոր ազնիւ նորահրաշ, նորահրաշ:*
*Պատուեալ ի փառս գերահրաշ.*
*Ի դասս սրբոց մեծահրաշ աննման:*

*Ի սկզբանէ ընտրեցար, ընտրեցար,*
*Յորովայնէ կոչեցար,*
*Քարոզ ազգիս մեր եղար աննման:*
*Գրիգոր ազնիւ մարգարիտ, մարգարիտ,*
*Իբր զգոհար վճիտ դատար.*
*Յանարդ մեր հովիտ աննման:*

*Որպէս բաժակ ոսկեղէն, ոսկեղէն,*
*Պարգեւեցար յանեղէն,*
*Տրամեցելոց բանեղէն՝ աննման:*
*Գրիգոր ազնիւ թագ կազմեալ, թագ կազ-*
*մեալ,*
*Մարգարտափայլ յօրինեալ,*
*Արշակունեաց գլուխ եղեալ՝ աննման:*

*Սիրով իջումն փեսային, փեսային,*
*Ի սէր մաքուր իւր հարսին,*
*Յայտնեաց քեզ Հայր Միածնին լոյս վերին:*
*Գրիգոր ազնիւ երանեալ, երանեալ,*

38 *որովայնէ* C:
41 *իբրեւ զգոհար վճիտ* C:
45 *տրամեցելոցս* D:
51 *միածին* M:

*Զմխածնին էջ յօրինեալ,*
*Ըստ օրինակին քեզ ցուցեալ աննման։*

*Ի մէջ երկրի կառուցեալ, կառուցեալ,*
*Իբրեւ զսիւն հաստատեալ,*
*Հայաստանեայց ջահ վառեալ լուսափայլ,*
*Գրիգոր ազնիւ վարդագոյն, վարդագոյն,*
*Ծառ պտղաբեր քաղցրագոյն*
*Տնկեալ ի գնացս ջուրց հոգւոյն ի տուն*
*Տեառն։*

*Էիցս էակ արարչին, արարչին,*
*Ամենայաղթ սուրբ Խաչին,*
*Բերեալ պտուղ առաջին քաղցրագոյն։*
*Գրիգոր ազնիւ վէմ հիման*
*Եկեղեցւոյս քրիստոսեան,*
*Ըստ գրոյն մատթէոսեան՝ աննման։*

*Նահատակ տէրութեան, տէրութեան,*
*Միարուն աստուածութեան,*

53 *զմխածին* M։
53 *յօրնեալ* C։
55 *յերկրի* D։
57 *Հայաստանեայցս* E։
57 *վառեալ աննման* D։
60 *Տեառն աննման* E։
63 *բեալ* DC։
63 *առաջին աննման* D։
64 *վէմ հիման, վէմ հիման* BC։
66 *երգոյն* D։
68 *միարան* (?) M։

Ընդունարան բնակութեան աննման :
Գրիգոր ազնիւ ծիածան , ծիածան ·
Խաղաղութեան տուեալ նշան ,
Ազգիս մերում Հայկական՝ աննման :

Բարուն վերնոց անմահից , անմահից ,
Իննեակ դասուցն խմբից ,
Երջանիկ աթոռակից աննման :
Գրիգոր ազնիւ արուսեակ , արուսեակ ,
Պայծառափայլ երեւակ ,
Երրորդութեանն արբանեակ՝ աննման :

Գովեստ առ քեզ որդիք քո , որդիք քո ,
Կարդամք զմայլեալ սիրով քո ,
Լուսաւորեալքս լուսով քո աննման :
Գրիգորիոս ծառայս քո , ծառայս քո ,
Բարձօղ անուան քում սրբոյ ,
Եւ սպասաւոր խորհրդոյ՝ պահեա , Տէր :

Տներու առաջին տողերու սկզբնատառերը կը կազմեն՝ «Գրիգորիսի է երգ»:

79 Որդիտ D:
81 լուսաւորեալ D:
81 լուսով քո յաւիտեան BC:
82 ծառայքս քո, ծառայքս քո E:

## Բ.

## ՆՈՐԻՆ ՀՍԿՈՂԻ ՈԳԵԱԼ Ի ՍՈՒՐԲ ԾՆՈՒՆԴՆ ՔՐԻՍՏՈՍԻ

*Գաւազան ծաղկեալ ի Հօրէ*
*Յարմատոյն Յեսսեայ ի Կուսէ.*
*Այսօր ահա բողբոջեցաւ.*
*Ձեզ մեծ աւետիս, աւետիս, աւետիս,*
*Ձեզ համայն աշխարհի աւետիս:*

*Բենակսն Աջոյն Աստուծոյ,*
*Մշակեալ ողկոյզ խաղողոյ,*
*Այսօր մարդկան պարգեւեցաւ.*
*Ձեզ մեծ աւետիս, եւն:*

*Ի յերկնից յերկիր խոնարհեալ,*
*Աստուածն բարձանց մարդացեալ,*
*Այսօր հովուացն յայտնեցաւ,*
*Ձեզ մեծ աւետիս, եւն:*

*Ձեռագիր՝*
A, *Թղ.* 5*բ*:
B, *Թղ.* 9*բ*:
C, *Թղ.* 8*բ*:
D, *Թղ.* 183*ա*:
E, *Թղ.* 4*բ*:
M, *Թղ.* 4*բ*:

2 *յարմատուն* C:
2 *յԵսսեայ* D:
5 *Աջոյ* BC: *աստուծոյ, հօր* M: Երբեմն գլխագիր եւ երբեմն՝ ոչ E:
11 *յայտնեցար* D:

Գովեալն ի վերնոց անմահից.
Եղեալ ի մարդ անբանից,
Այսօր՝ ի մոգուց պատուեցաւ.
Ձեզ մեծ աւետիս. եւն:

Որ յաթոռ փառաց Հօր բազմի,
Արարողն երկնի եւ երկրի,
Այսօր աՀա յայրին ծնաւ.
Ձեզ մեծ աւետիս. եւն:

Բողէից էակ Հօր Որդի,
Շառաւիղ Դաւթի արքայի,
Այսօր յերկրի երեւեցաւ.
Ձեզ մեծ աւետիս, աւետիս,
Ձեզ Համայն աշխարՀի աւետիս:

Տներու առաջին տողերու սկզբնագրերը կը կազմեն՝ «Գրիգոր»:

13 անմահի BC:
22 Դաւիթ D:

## Գ.

## ՆՈՐԻՆ ԳՐԻԳՈՐԻ ԳՐՈՒԱԾ ԱՌ Ի ՊԱՏԻՒ ԵՐՋԱՆԿԱՓԱՌ ԱՄՈՒԼԻՑՆ ՀԱՒԱՏՈՑ ԵՐԿՈՏԱՍԱՆԻՑ ՎԱՐԴԱՊԵՏԱՑ ՍՐԲՈՑ

*Գումարք խմբից արարչական,*
*Հոյլք անմարմնոց եւ մարմնական*
*Նորաքանչ ձայնիւ ցընծան,*
*Ի յերեւումն հրաշական·*
*Որք նոր երգով տօնախմբեն*
*Ծափս հարելով եղանակեն,*
*Աւետաւոր ձայնիւ երգեն,*
*Յայն տեսարանն արշաւեն:*
*Որոց զձայնն իբրեւ լուայ*
*Վաղվաղակի զհետ չոգայ,*
*Ի յայն հանդէս ժամանեցայ,*
*Ուրախութեամբ մեծաւ լցայ:*

*Բարունեաց սուրբ երամից,*
*Դիպեալ պարու լուսազարդից,*

*Ձեռագիր՝*

A, *Թղ.* 6*ա*—6*բ*:
B, *Թղ.* 10*ա*—10*բ*:
C, *Թղ.* 5*ա*—5*բ*:
D, *Թղ.* 187*ա*—187*բ*:
E, *Թղ.* 5*ա*—5*բ*:
M, *Թղ.* 5*ա*—5*բ*:

*Գրիգորի նորին... երկոտասանաց* D:
*վարդապետացն* ME:
9 *իբրեւ զձայն* D:
10 *չոքայ* ABCM:

Տեսի զտեսիլ իբր անմահից ,
Նման վերնոց վեհագունից :
Որք ծագեցան փայլակնապէս ,
Լուսով փայլեալ արփիապէս ,
Ճառագայթեալ հրաշապէս ·
Ծաղկեալ զաշխարհս գեղեցկապէս :
Որոց զհետ անձն իմ չոգաւ ,
Տեսլեամբ նոցին զուարճացաւ ,
Սիրտ իմ ընդ այն յոյժ ցնծացաւ ,
Իբրեւ զինեաւ զուարթացաւ :

Ի վեհագոյն յայն հանդիսի ,
Բազում խորհուրդ յիշատակի ,
Կրկնապատկեալ ստեղծանի ,
Ժամք տուընջեան եւ գիշերի :
Որք տան իմացս մերոց մտաց ,
Թէ զինեալ կան ընդդէմ չարաց ,
Հալածելով զխաւար մեղաց ,
Զլեգէօնն չար դիւաց ,
Որոց զհետ անձն իմ չոգաւ ,
Կալ ընդ նոսա յոյժ տարփացաւ ,

15 զտեսիլն D:
18 արփիապէս E:
19 եւ հրաշապէս D:
21 չոքաւ ABCM:
22 զուարթացաւ :C:
27 ըստեղծանի D:
29 յիմոցս մերոց D:
32 լեգէօնըն E չար զօրաց BCD:
33 չոքաւ A:
34 տափացաւ C:

*Նոցին վարուք զգաստացաւ,*
*Ի տէրունի յատուն նստաւ:*

*Գնացք գետոց եդեմական,*
*Քառավտակ աղբերց հոսման,*
*Ի սոյն խորհուրդ հրաշագան,*
*Արարչական բանիւ ցուցան:*
*Որք յայնմ աւուր յերկրէ բղխեալ*
*Ի քառակողմ աշխարհ դիմեալ,*
*Նոյն օրինակ առատացեալ,*
*Բանականաց գետոց ծածկեալ:*
*Որոց զձայն իբրեւ լուայ,*
*Ի նիրհմանէ քնոյ զարթեայ,*
*Ի տեսարանն այն ընթացայ,*
*Յափունս գետոց նստեալ հանգեայ:*

*Որպէս աստեղք իշխանական,*
*Կենդանակերպք երկոտասան,*
*Են յարաժամ ասպնջական,*
*Իմանալի արեգական:*
*Որք ծագեցան յեկեղեցի,*
*Փայլակնացայտ լուսով յերկրի,*
*Սփռեալ զլոյս ամենայնի,*
*Իբրեւ զարեւ միջօրէի:*
*Որոց զլոյս մինչ ընկալայ,*
*Ի խաւարէ փարատեցայ,*
*Ի հնութենէ նորոգեցայ,*
*Զիմ զառաջին տիպն զգեցայ:*

43 *առացեալ* BC: 54 *երկրի* ABC:
60 *ըզգեցայ* E:

Բարունեաց վեհից մեծաց,
Երկոտասան վարդապետաց,
Աշակերտեալ հանուրց ազգաց,
Եկեղեցիք հեթանոսաց:
Որք գետորէն առատացան,
Ընդ տիեզերս արձակեցան,
Քաղաքք Տեառն ուրախացան,
Բանք սաղմոսին նոքօք լցան,
Որոց զձայն իբրեւ լուայ,
Վաղս առեալ արշաւեցայ,
Ցոտս նոցին ժամանեցայ,
Կալ ընդ նոսա ոչ հեզգացայ:

Տներու առաջին տողերու սկզբնատառերը կը կազմեն՝ «Գրիգոր»:

63 ազգից C:
66 տիեզեր BC:
67 քաղաքի C: քաղաքըք E:
70 վազրս E եւ այլուր ունի «ը» ի գործածու– թիւնը:

Դ.

## ՆՈՐԻՆ ՏԱՂ ՍԻՐՈՅ ԽՈՐՀՐԴԱԲԱՐ ՈԳԵԱԼ Ի ԴԻՄԱՑ ՀԱՐՍԻՆ ԵԿԵՂԵՑԻՈՅ ԱՌ ԱՄԵՆԱՄԱՔՈՒՐ ՓԵՍԱՅՆ ՅԻՍՈՒՍ

*Գեղեցիկ ես, մերձաւոր իմ,*
*յամենայնի գովելի,*
*Իմ աննման եւ անարատ*
*աղաւնաղոյն՝ սիրելի, սիրելի,*
*Խանդակաթ եմ ի սէր քոյին՝*
*իմ միայնակ անձկալի:*
*Զքեզ գովէ իմ աննման*
*իմաստունն՝ հոգելի, հոգելի,*
*Զնոյն եւ իմ քեզ ընծայեալ*
*երգարանեմ նազելի, նազելի:*

*Րենական տիպ սիրոյ քոյին*
*իբրեւ արեւ ծագեցաւ,*
*Ներ սենեկի իմում սրտի*
*հրաբորբոք տապացաւ, տապացաւ,*
*Ի հնչմանէ հողմոյ հողւոյն*
*ձիւն եւ սառն հալեցաւ:*
*Զքեզ գովէ:*

*Ձեռագիր՝*

A, *թղ.* 7*ա*—7*բ*:
B, *թղ.* 11*ա*—11*բ*:
C, *թղ.* 6*ա*—6*բ*:
D, *թղ.* 184*ա*—*բ*:
E, *թղ.* 6*ա*—*բ*:
M, *թղ.* 6*ա*—*բ*:

3 (*անարատ*) C:
9 *զհնոյն* C:

*Իբրեւ յարեաւ հողմ հիւսիսոյ ,*
*հնչեաց յիս հողմ հարաւոյ ,*
*Զմեռն էանց , անձրեւք անցին ,*
*եկն եհաս ժամ գարնայնոյ , գարնայնոյ ,*
*Ծաղկեալ այգիք զարդարեցան ,*
*բողբոջեալ ծառ թզենւոյ ։*
*Զքեզ գովէ ։*

*Գնացք ոտից եղբօրորդւոյն*
*ձայն տուեալ՝ զիս զարթուցին ,*
*Յարեայ փութով բանալ նմա*
*ձեռք իմ զմուռս կաթեցին , կաթեցին ․*
*Այն ինչ բանալ փականակին*
*էանց գինեւ տարփալին ։*
*Զքեզ գովէ ։*

*Որպէս գնետ յաղեղանէ*
*ի դուրս յանժամ սրացայ ,*
*Ի գիւտ սիրոյն հեռացելոյ*
*տարէ ի տար մեկնեցայ , մեկնեցայ ․*

19 *հարաֆոյ* E ։
19 *ի յիս* D ։
20 *անձին* E ։
21 Եւ *եկն* D ։
23 *թզենոյ* D ։
23 *թզենոյ*(?) E ։
25 *գնացք գետոց եղբօրս որդոյն* D ։
25 *եղբօր որդւոյն* EM ։
26 *զարդուցին* C ։
32 *աղեղանէ* D ։

Աստանդական թափառանօք
    մորմոքելով շրջեցայ ։
Ջքեզ գովէ ։

Ռամից արանց գիշերապահ
    պահապանաց քաղաքին,
Ինձ հանդիպեալ սրտմտեցան
    եւ զան հարեալ կապեցին, կապեցին,
Զանձնէ խմմէ հանեալ ի բաց՝ զադնիւ
    խլայն մերկեցին ։
Ջքեզ գովէ ։

Իրրեւ սակաւ յառաջ անցեալ՝
    հանդիպեցայ դստերաց,
Հարցի սիրով զնադեւլոյս
    պատմել ինձ թէ ո՞ւր գնաց, ո՞ւր գնաց ։
Նոցա առ. իս պատասխանեալ՝
    հարցին զնորայն նշանաց ։
Ջքեզ գովէ ։

Որոց այսպէս պատասխանեալ,
    եսու զադնիւ նշանակ,
Եղբօրորդին իմ սիրական
    է աննման անքատակ, անքատակ,

36 սստ անդական A ։
39 ռամից արանց գիշերապահ, պահապանաց քաղաքին, ինձ, չունին BC ։
42 կապ(եցին) E ։
43 հանել BC ։
49 ո՞ւր գնաց մի անգամ՝ E ։
55 եղբօր որդին EM ։ 56 անքատական BC ։

Եւ ի բիւրուց է նա ընտրեալ՝
կարմիր գոհար ազնուակ :
Զքեզ գովէ :

Սքանչելի տեսիլ նորա
արուսեկի հրափայլ,
Գլուխ նորա յոսկւոյ սրբոյ
եւ կեփազեայ լուսափայլ, լուսափայլ,
Վարսք կոծոյք հոյլ մարգարիտ՝
իբրեւ զագռաւ դեղափայլ :
Զքեզ գովէ :

Իսկ աչք նորա լուացեալ կաթամբ
իբրեւ ազնիւ աղաւնի,
Վերանստեալ ջուրց լիութեան
բառ երգողին արքայի, արքայի,
Ծնօտք նորա են տաշտք խնկոց,
շրթունք շուշանք զմռսալի :
Զքեզ գովէ :

Եւ ձեռք նորա ճախարակեայք
լցեալ ակամբ Թարսսոյ,

57 եւ իւրոց C:
57 ի բիւրոցն D· եւ ի բիւրուց չունի E:
61 եւ հրափայլ D:
64 հոյլք D: 64 վարսք կոծոյք չունի E:
70 արքայեաց D:
71 ծնօտք չունի E:
71 պաշտք M:
72 եւ շրթունք D: — շուշանք չունի D:
75 Թարսսոյ եւ յորովայն D:

*Եւ որովայն համակ ոսկի*
*ականակապ շափիւղայ՝ շափիւղայ․*
*Տեսակ նորա է լիբանոս ,*
*սրունք նորա սիւնք կճեայ ։*
*Զքեզ գովէ ։*

*Բամբից ազանց է ցանկալի*
*եղբօրորդին իմ նազելի ,*
*Նա աւանիկ էջ ի պարտէզ*
*յիւր բուրաստան խնկալի , խնկալի ,*
*Իցէ՞ արդեօք մտանել իմ*
*ի պարտէզ անդ ծաղկալի ։*
*Զքեզ գովէ ։*

*Գնաց սէրն իմ ահաւասիկ*
*առանձինն ի տեղի ,*
*Եւ ի լեառն անդ զմռոսյ*
*եւ ի բլուր կնդրկի , կնդրկի ․*
*Իցէ՞ արդեօք ելանել իմ*
*ի լեառն այն խնկալի ։*
*Զքեզ գովէ իմ աննման*
*իմաստունն հոգելի ։*

*Տներու առաջին տողերու սկիզբի տառերը կը կազմեն՝ «Գրիգորիսի երգ» ։*

82 *եղբօր որդին* ME ։
83 *նա* չունին BC ։
83 *աղաւնիկ* D ։
91 *ի բոլուր* (՞) E ։
92 *Իցէ՞* չունի E ։

# Ե.

## ՆՈՐԻՆ ԴԱՐՁԵԱԼ ՎԱՄՆ ՍԻՐՈՅ Ի ԽԱՉԵԱԼՆ ԵՒ Ի ԿՈՅՍՆ ՍՈՒՐԲ. ԱՍԱՑԵԱԼ Ի ԴԷՄՍՆ ՎԱՐԴԻՆ ԵՒ ԼՈՒՍՆԻԱԿԻՆ

*Ի ցոլանալ չող արեւուն*
*զարթեաւ պլպլիլն ի նոյն ժամուն՝*
*աւաղ.*
*Հանդէպ վարդին կայր ի կանգուն*
*անթարթ աչօք առ նա հայէր՝ աւաղ:*
*Հայէր եւ մի առ մի(ի) թուփսն*
*նա՛յէր, նա՛յէր, նա՛յէր:*

*Գեղածիծաղ կոկոն վարդին,*
*էր թաքուցեալ ի մէջ թփին՝ աւաղ,*

*Ձեռագիրք՝*

A, *թղ.* 8ա—9*ա*:
B, *թղ.* 12*ա*—13*ա*:
C, *թղ.* 7*ա*—8*ա*:
D, *թղ.* 192*ա*—193*ա*:
E, *թղ.* 7*ա*—*բ*:
M, *թղ.* 7*ա*—8*ա*:

*ի դէմս* E:
*լուսինեակին* BC: — *լուսինակին* D:

7 *նայէ՛ր* եւն, նաեւ յաջորդները՝ *ձայնէ՛ր եւն* E. *նա՛յէր, նա՛յէր, նա՛յէր.* այսպէս եւ միւս տուներու մէջ երեք անգամ գրուած բառերու վրայ ACM:

8 *կոկոն* D:

9 *թագուցեալ* DE:

Շրջագլխեալ լուսինակին
    կարծէր թէ անդ վարդն ոչ էր՝ աւաղ,
Ոչ էր եւ ողբս առեալ ձայնիւ
    գոչէր, գոչէր, գոչէր։

Բախճանական սիրով նեղեալ
    վասն վարդին էր դեղերեալ՝ աւաղ,
Սաստիկ ցաւոյն չհանդուրժեալ
    առ այն բազում ողբս լայնէր՝ աւաղ,
Լայնէր եւ լալագին երգով
    ձայնէր, ձայնէր, ձայնէր.

Իբրեւ այն ինչ զգաստանայր,
    Թռիչս առեալ յառաջ խաղայր՝ աւաղ,
Ի թուփ վարդին այն մերձենայր
    զցրեալ չիւղսն դարձեալ չարէր՝ աւաղ
Շարէր զտերեւօք նորին
    փարէր, փարէր, փարէր։

Գնայր ճեպով ի մէջ տնկոյն
    եւ աղերսէր զերես թփոյն՝ աւաղ,
Մինչ կաթոգին շարժէր զնոյն
    ի տերեւաց ցօղն շաղէր՝ աւաղ,

10 լուսինեակին BC:
15 դեքերեալ E: է՞ր դեղերեալ M:
17 չահանդուրժեալ C:
18 լանէր C:
22 ձենայր C:
23—24 աւաղ, չարէր չունին AM:
26 զնայ C:
27 զերեսս D:

Ծաղէր լուսնիակին հողին
 քաղէր, քաղէր, քաղէր:

Ոստոստալով թրթռալով
 ներքուստ ի ներքս գնալով՝ աւաղ,
Յուզէր, խուզէր փարանելով
 ի խաւարչուտ տեղին գայթէր՝ աւաղ,
Գայթէր. անդէն օձն գնա
 խայթէր, խայթէր, խայթէր:

Բառեալ ողբս լուսինակին
 ընդ հովանեաւ թփոյ վարդին՝ աւաղ,
Լայր հառաչէր հիւանդագին
 եւ զարտասուս յաչաց ցօղէր՝ աւաղ,
Ցօղէր եւ տերեւօք զինքն
 քօղէր, քօղէր, քօղէր:

Էջեւ գաղխ լուսինակին
 ի վայր թափեալ թերթիկ վարդին՝ աւաղ,
Զոր ժողովեալ կսկծագին,
 դարձեալ ի նոյն չուքն տանէր՝ աւաղ,
Տանէր. անդրէն ի նոյն թուփն
 հանէր, հանէր, հանէր:

30 լուսինակին BCD:
38 լուսնիակին E:
45 լուսնիակին E:
47 կսկրծագին M:
48 չուքն տանէր, աւաղ թուփն հանէր, հանէր, հանէր E:

Եւ մինչ խղճուկ հաւն թախծեալ,
էր անդ հանդէպ թերթին նստեալ՝ աւաղ,
Զաչսն ի նոյն կայր չրտուցեալ·
հնչեալ հողմոյն թերթն թափէր,
աւաղ թափէր եւ զարտասուս հաւն
չափէր, չափէր, չափէր:

Ռամից հաւուց ջոկ աղանեաց
եւ զունդադունդ տարմ տատրակաց՝ աւաղ,
Ընդ անցանելն այգեստանեայց
պխւլպխւլն յաչաց արխին սորէր՝ աւաղ,
Սորէր իբրեւ առու յորդեալ
թորէր, թորէր, թորէր:

Գլուխն ի վեր մինչ ամբառնայր,
տեսեալ յօդս երամ գնայր՝ աւաղ,
Զայնէր նոցա, լայր եւ ողբայր
վասն վարդին բանս տողէր՝ աւաղ
Հասուցանել առ նա
փողէր, փողէր, փողէր:

51 *թաղձեալ* E: 52 *թերթիկ* B:
54 *չերտուցեալ* E:
55 *հրնչեալ* (եւ այլուր «ը»-ի գործածութիւն) E:
59 *ռամեալ* D: — *լոկք* D:
61 *աչաց* E:
63 *արխին* E: 63 *այգեստանեայց* BC:
65 *թորէր* միայն երկիցս C:
68 *լար* C: 69 *տողէր հասուցանել* E:

Երագապէս առ թուփ վարդին,
խորդք եւ հովփալք հասանէին՝ աւաղ,
Զպխլպխլէն քաջ պատմէին
եւ զայն լուեալ վարդն հոծէր՝ աւաղ՝
Հոծէր. մաղկատելով լայր եւ
կոծէր, կոծէր, կոծէր:

Այնուական սիրով լցեալ
կարմիր վարդին սիրտն ճմլեալ՝ աւաղ,
Փութանակի յուզի անկեալ,
զայր պխլպխլին հանդէպ բազմէր՝ աւաղ,
Բազմէր. յախտից բուժեալ զնա
կազմէր, կազմէր, կազմէր:

Լուսինակին զնա տեսեալ
ճխայր ճչայր սաւառնացեալ՝ աւաղ,
Երգէր ձայնէր թեւապարեալ
զտխրական քօղն մերկէր՝ աւաղ,
Մերկէր. ի զոյն վարդին՝ զանձն
ներկէր, ներկէր, ներկէր:

Տներու առաջին տողերու սկզբնագրերը կը կազմեն՝ «Գրիգորէ երգեալ»:

72 փուփ M:
73 խալք եւ հովփալք D: հով փալք E:
75 մարդն E:
83 յախտեց զնա (երկվանկ բառ մը մոռցուած) զնա կազմէր D:
85 լուսնիակին E:
87 ձայնիւ M:

## Ձ.

### ՆՈՐԻՆ ԳՐԻԳՈՐԻ ԴԱՐՁԵԱԼ ՎԱՍՆ ՍԻՐՈՅ. ՈՐ ՀԱՅԻ Ի ԴԷՄՍ ՀԵՌԱՒՈՐ ՍԻՐԵԼԵԱՑ ԵՒ ԿՈՐՈՒՍԵԱԼ ԲԱՐԵԱՑ

*Արփիափայլ տիպ գեղեցիկ,*
*Իմ նազելի պայծառ հաւիկ,*
*Վարդակարմիր պատկեր քաղցրիկ·*
*Երեւեցո զերեսս քո ինձ,*
*Որ փափագիմ:*

*Բարուն վերնոց լուսեղինաց,*
*Քաղցրանուագ եղանակաց,*
*Համանման ձայն քո հնչեաց·*
*Երեւեցո զերեսս քո ինձ,*
*Որ կարօտիմ:*

*Ձեռագիր՝*

A, *Թղ.* 9*բ*:
B, *Թղ.* 13*ա*:
C, *Թղ.* 8*բ*:
D, *Թղ.* 181*ա*:
E, *Թղ.* 8*ա*:
M, *Թղ.* 8*բ*:

*բարեկամայ* D:
2 *հաւիկ* E:
3 *վարդ կարմիր պատկեր գեղեցիկ* E:
4 *քոյ* D:
5 *փափագեմ* BC:
8 *քոյ* D:
10 *կարօտ եմ* BC:
10 *որ փա(փագիմ)* E:

Թախծեալ սրտիւ մինչ հառաչեմ,
Ի սար, ի ձոր շրջագայեմ,
Սիրոյդ տեսոյն ոչ հասանիմ.
Երեւեցո զերեսս քո ինձ,
Որ զեղերիմ:

Ոսկեփետուր իմ աղաւնի,
Սողոմոնի զքեզ հարցի,
Ցակունս աղբերց, ասէ, նստի.
Երեւեցո զերեսս քո ինձ,
Որ տագնապիմ:

Ււծեալ ողւով սիրահարեալ,
Աղաղակեմ ի ձայն բարձեալ,
Զքեզ աղաչեմ իմ սիրեցեալ.
Երեւեցո զերեսս քո ինձ,
Որ նուաղիմ:

Նախանձաւոր չար թշնամին,
Ի փութանայն իմ զհետ քոյին,
Եհար զիս ի ճանապարհին.
Երեւեցո զերեսս քո ինձ,
Որ մեռանիմ:

Տներու առաջին տողերու սկզբնատառերը կը կազմեն «Արթուն»:

| | |
|---|---|
| 12 շրջագայիմ B: | 20 տագնապեմ C: |
| 14 քոյ D: | 21 զիմօք E: |
| 17 Սողօմոնի ABCM | 24 քոյ D: |
| 17 Սողոմոնի է E: | 27 ի փութայն D: |
| 19 քոյ D: | 29 քոյ D: |

## Է·

### ՆՈՐԻՆ ԳՐԻԳՈՐԻ ԴԱՐՁԵԱԼ ՎԱՍՆ ՍԻՐՈՅ ԱՍԱՑԵԱԼ Ի ԴԻՄԱՑ ՅՕՏԱՐ ԵՐԿԻՐ ՊԱՆԴԽՏԱՑԵԼՈՑ ԱՌ ԱԶՆՈՒԱՑԵԱԼ ԲԱՐԵԿԱՄ ԻՒՐ ՀԵՌԱՒՈՐ

*Գոչեմ ողբամ, միշտ հառաչեմ*
*զօրն ողջոյն, զգիշերն ողջոյն·*
*Ի խոր խոցեալ աղեկիզիմ*
*ի սէր իմոյ սիրելւոյն, սիրելւոյն,*
*Իբրեւ նետիւ վիրաւորեալ*
*մշտանամ ես ի ցաւոյն,*
*Ո՜հ ո՞վ փութայր առ անձկալին,*
*աղդէր նմա ողբալով, ողբալով,*
*Ոհ, ո՞վ փութայր առ սիրելին,*
*կոչէր զնա գալ առ իս, գալ առ իս:*

*Բռնեալ ցաւօք վշտաչարչար,*
*անկեալ դնիմ ի մահճի,*
*Յօտար երկիր պանդխտական*
*անձն իմ նեղեալ տագնապի, տագնապի·*
*Յամենայնի դոյաթափուր*
*ջրոյ անդամ կարօտի·*
*Ո՜հ, ո՞վ փութայր առ նազելին,*
*պատմէր զինէն ողբալով, ողբալով,*

Ձեռագիր՝

A, թղ. 10ա—10բ:
B, թղ. 14ա—14բ:
C, թղ. 9ա—9բ:
D, թղ. 185ա—186բ:
E թղ. 9բ:
M, թղ. 9ա—9բ:

2 զգիշերն ողջոյն ABCEM: 3 աղէքիզիմ E:
4 սիրելոյն, սիրելոյն D: 7 ո՛հ, ո՛վ միշտ M:

Ո՛հ, ո՛վ փութայր առ նազելին,
կոչէր զնա գալ առ իս, գալ առ իս:

Ինձ հաւաստի է օրինակ,
տարաբախտիկ այրն անկեալ,
Որ իսկապէս ըղցաւ հիքոյս
յառաջագոյն գուշակեալ, գուշակեալ,
Քանզի առ իս ակնարկելով
Փրկիչն Յիսուս առակեալ·
Ո՛հ ո՞վ փութայր առ բաղձալին,
աղդէր նմա ողբալով, ողբալով,
Ո՛հ, ո՞վ փութայր առ սիրելին,
կոչէր զնա գալ առ իս, գալ առ իս:

Գաղտագողի ելուզակաց
եկեալ յիմ վերայ հասին,
Մերկեցին զիս եւ գանեցին
կիսամահ զիս արարին, արարին·
Ոչ գտաւ մի ոք օգնական,
այլ որք տեսին զանց արին:
Ո՛հ, ո՞վ փութայր առ ըղձալին,
պատմէր զինէն ողբալով, ողբալով,
Ո՛հ, ո՞վ փութայր առ սիրելին,
կոչէր զնա գալ առ իս, գալ առ իս:

23 ղցաւս D:
23 հիքայս M:
26 փրկելն Յիսուս առաքեալ (?) D:
31 Նաւապետի ելուզակի D:
32 իմ D:
33 մեկնեցին D:
36 այլք DC:

*Ոչ ոք է ինձ տառ մխիթար*
*խնամօղ եւ օգնական,*
*Այլ միայն Տէրն իմ արարօղ*
*յոյսն անմահ վերնական, վերնական,*
*Որ յօրինակ Սամարացւոյն*
*բուժէ զցաւս իմ հոգեկան:*
*Ո՛հ, ո՞վ փութայր առ տենչալին,*
*ազդէր նմա ողբալով ողբալով,*
*Ո՛հ, ո՞վ փութայր առ սիրելին,*
*կոչէր զնա գալ առ իս, գալ առ իս:*

*Բենականաւ, սիրով լցեալ*
*սիրելիդ իմ քաղցրագոյն,*
*Զայս աղէտ իմ մինչ լուիցես՝*
*փութա առ իս կանխագոյն, կանխագոյն:*
*Թերեւս մինչեւ մեռեալ իցեմ՝*
*եղէց արժան քոյդ տեսոյն:*
*Ո՛հ, ո՞վ փութայր առ տարփալին,*
*պատմէր զինէն ողբալով, ողբալով,*
*Ո՛հ, ո՞վ փութայր առ սիրելին,*
*կոչէր զնա գալ առ իս, գալ առ իս:*

*Տներու առաջին տառերու սկզբնագրերէն կը կազմուի՝ «Գրիգոր»:*

49—50 *առ բարեկամն սէր ընդունէր հոգելի հոգելի* D:
53 *զսիրելիդ* D 53 *քաղձրագոյն* E:
55 *մինչեւ* D:
58 *ողբալով* մի անգամ DC:
59 *առ* չունի C:

# Ը.

## ՆՈՐԻՆ ՀՍԿՈՂԻ ՈՂԲԵՐԳԱԲԱՐ ՈԳԵԱԼ ԱԿՆԱՐԿԵԼՈՎ Ի ԿԵՆՑԱՂՍ ԱՅՍ ՍՆՈՏԻ ԵՒ Ի ԴԱՏԱՍՏԱՆ ԱՀԱԳԻՆ

*Իբրեւ ստուեր աւուրք կենացդ*
*անցեր կենցաղս սնոտի, աւա՜ղ.*
*Եկեալ մահու ահա առ քեզ*
*մերձեցաւ, մերձեցաւ, մերձեցաւ.*
*Վայելելով ի բարութեան*
*անցեր կենցաղս սնոտի, աւա՜ղ.*
*Ահա այսօր կոչէ զքեզ՝*
*կոչնատէրն, կոչնատէրն, կոչնատէրն:*

*Գերդաստանի այս կենցաղոյս*
*վերատեսուչ կարգեցար՝ աւաղ:*

*Ձեռագիր՝*
A, *թղ.* 11*ա*—11*բ*:
B, *թղ.* 15*ա*—15*բ*:
C, *թղ.* 10*ա*—10*բ*:
D, *թղ.* 190*ա*—191*ա*:
E, *թղ.* 9ա—բ:
M, *Ը—ԺԲ* տաղերը չունի:

*ողբերաբար* E:
*ի դատաստանն* DE:
2 *ո՜հ* E: *Աւա՜ղ*, միշտ AB *եւն*:
3 *ի քեզ մերձեցաւ* E:
5 *վայ ելելով* E:
6 *զկենցաղս* D:
9 *զեր դատաստանի այս կենցաղւոյս* E:
9 *նորարողրոջ այս կենցաղոյս* D:

*Բայց զի՛նչ օգուտ, որ զինչս Տեառն*
*վատնեցեր, վատնեցեր, վատնեցեր :*
*Արդ աւասիկ հանցէ զքեզ*
*Աստի կենաց Տէրն քո՝ աւաղ.*
*Եւ պահանջէ զտաղանդս ի քէն,*
*զի՞նչ առնես, զի՞նչ առնես, զի՞նչ առնես :*

*Բամեալ ծառայք քո զրկեցեալ*
*ամբաստանեն արդ ի քէն՝ աւաղ :*
*Ձորս ի զուր վշտացուցեր*
*զրկելով, զրկելով, զրկելով :*
*Բառեալ տարերք ամենեքեան*
*քեզ զատախազ երեւին՝ աւաղ :*
*Եւ լուսաւորք արեգակամբ*
*բողոքեն, բողոքեն, բողոքեն :*

*Ի յատենի թագաւորին*
*մինչ կացուցեալ տագնապիս՝ աւաղ*
*Երամք սրբոցն աստեղափայլ*
*զարդարին, զարդարին, զարդարին :*
*Դատօղն արդար ի յակնարկելն*
*ի դէմս քո ամաչիս՝ աւաղ :*

12 *վատնեցար, վատնեցար, վատնեցար* D:
15 *զտաղանտ* D:
18 *ծառայքս* E:
18 *զրկեցեալք* D:
19 *անդ* E:
22 *ամենայնք* D:
30 *ի յակն արկելն* E:
31 *ամաչես* D:

*Եւ ի հրոյ փայլատակմանց*
*կորնչիս, կորնչիս, կորնչիս։*

*Գործոց քոց անդ կշիռք դնին*
*բարիք ի քէն պահանջեն՝ աւաղ։*
*Եւ ի դիմաց Թագաւորին*
*երկնչիս, երկնչիս, երկնչիս։*
*Անդ երեւեալ հրակերպիցն*
*հրացեալ չանթիւ հարկանեն՝ աւաղ։*
*Որոց յահէ խուսափելով*
*զարհուրիս, զարհուրիս, զարհուրիս։*

*Որպէս ծառայն պարտաւորեալ*
*բիւր քանքարոյ կշտամբիս՝ աւաղ։*
*Եւ չարաչար մատնիս ի բանտ*
*խաւարին, խաւարին, խաւարին։*
*Պաղատիլ անդ եւ աղաչել*
*զոք ի սրբոց ոչ կարես՝ աւաղ։*
*Այլ առաւել յամենեցունց*
*նախատիս, նախատիս, նախատիս։*

*Բախձական լուսոյն փառաց*
*տարամերժեալ հալածիս՝ աւաղ։*
*Յաջակողմեան դասուն լքեալ*
*հերքեցիս, հերքեցիս, հերքեցիս։*

35 *պահանջին* D։
46 *անդ եւ* չունին BC։
53 *հերքեցիս* երկիցս՝ BC։

Երեսք անկեալ եւ խոնարհեալ
тարէ ի տար հեռացեալ՝ աւաղ :
Կապեալ ձեռօք ի հուրն անշէջ
առաքիս , առաքիս , առաքիս :

Ի յայնմ ահեղ հրապարակին
դշխոյն Սարայ եկեաց է՝ աւաղ :
Ի դատաստան անձին խմում
յարիցէ , յարիցէ , յարիցէ :
Տիրաքարոզ պատուիրանին
վրէժխնդիր եղիցին՝ աւաղ :
Միգոնացիք եւ արք գգաստք
Նինուէի , Նինուէի , Նինուէի :

Ոխորդացեալ չար թշնամւոյն
դաւադանացեալ սրտմտի՝ աւաղ :
Առեալ զգերիս ածէ ի բանտ
դեհեննին , դեհեննին , դեհեննին :
Է անդ լալումն՝ եւ հառաչումն՝
դոչումն ողբոց սոսկալի՝ աւաղ :
Յօրժամ յուղի անկեալ գնան
ողբալով , ողբալով , ողբալով :

54 երես D :
58 ի յայն E :
63 եղիցի D :
64 Միգօնացիք BC :
67 դերադանցեալ E :
68 առեալ զվէրս D :

*Սակայն փրկիլ է քեզ հնար*
*եթէ դարձցիս եւ գոչես՝ աւաղ :*
*Յուսաս յԱստուած, որպէս ասաց*
*Եսայեաս, Եսայեաս, Եսայեաս*
*ի նա քանզի հզօր իշխան*
*կրկին կենաց եւ մահու՝ աւաղ :*
*Յարուցէ զքեզ որպէս երբեմն*
*Եզեկիաս, Եզեկիաս, Եզեկիաս :*

*Տներու առաջին եւ երրորդ տողերու սկզբնատառերէն կը կազմուի «Գրիգորիոս վարդապետէ»:*

75 *թէ* C:
76 *յուսա* D:
77 *Եսայիաս, Եսայիաս, Եսայիաս* D:
77 *Յեսայիաս, Յեսայիաս, Յեսայիաս* E:
81 *Եզեկի* վերջինը E:

## Թ.

### ՆՈՐԻՆ ԳՐԻԳՈՐԻ ԱՂԵՐՍ ԱՌ ԱՍՏՈՒԱԾ Ի ԴԻՄԱՑ ՀՈԳԵՎԱՐ ՀԻՒԱՆԴԻ

*Օրհնաս մահուն յանկարծակի ինձ հասեալ*
*Անձն իմ զողայ եւ սարսափի զարհուրեալ,*
*Աւաղ հիքոյս, որ ի մահճի կամ անկեալ,*
*Եւ ի դուռն դառն մահու ժամանեալ:*

*Ցողայ արդէն ի վերայ իմ աւասիկ,*
*Հրաման էին սուր երկսայրի պողովատիկ,*
*Բառնի այսօր արեւ կենացս իմ քաղցրիկ:*
*Եւ քայքայի կերտուած մարմնոյս գեղեցիկ:*

*Աղիողորմ լալով մաղթեմ՝ ոչ լսէ,*
*Այլ բարկանայ եւ յոյժ ցասմամբ հարկանէ·*
*Զհոգիս այսօր յինէն ի բաց պահանջէ,*
*Զկապ հոգւոյս եւ մարմնոյս իմ լուծանէ:*

*Կական բարձեալ աղաղակեմ ցաւագին,*
*Առ մերձակայս եւ ընտանիս լալագին,*

*Ձեռագիր՝*

A, *Թղ.* 12*ա*:
B, *Թղ.* 16*ա*:
C, *Թղ.* 11*ա*:
D, *Թղ.* 197*ա*:
E, *Թղ.* 10*ա*:

*հոգեւոր* D:
6 *հրամանէն* E:
6 *երկսարի* D:
6 *պողուատիկ* DE:
8 *քաղձրիկ* E:
12 *ըզկապ* E:
14 *մերձակայ եւ ընտանի* D:

Գալ ի թիկունս ինձ օգնութեան մարթացին,
Բայց յայնցանէ ոչ ոք աստէն գտանին:

Անդառնալի ահեղ հրաման կոչողին,
Զարհուրելի տեսիլ եւ դէմք հրեշտակին,
Զիս անզգայ եւ անկենդան կացուցին,
Զզօրութիւն անձին իմոյ քակտեցին:

Նաւաբեկեալ ի մէջ ծովու ես ծփիմ,
Ի յուզմանէ ալեացն ջուրց զարհուրիմ,
Արդ ապրեցո ի հեղձմանէ զիս Տէր իմ,
Զի գալ առ քեզ ի վերայ ջուրց հասանիմ:

Ցոյց՝ ինձ, Տէր իմ, ելս դիւրագոյն ընթացից,
Զի գալ առ քեզ տաղտուկ անձամբ կարացից,
Զի բեռն է ինձ՝ իղձ աշխարհիս մեղսալից,
Որ ընկղմէ զհոգիս ի զուր տղմալից:

Ի զուր մահու անիւ կենացս ընկրկեալ,
Մարմնով ի հող անձամբ առ քեզ եմ դիմեալ,
Զքո արարչիդ անդարձ հրաման կատարեալ՝
Ի կենցաղոյս ահա եղէ հրաժարեալ:

Տներու առաջին տողերու սկզբնատառերը կը կազմեն «Օշականցի»:

15 օգնութիւնս D:
15 օգնութիւն E:
17 գտանի E:
18 տեսիլք E:
20 ըզզօրութիւն (եւ այլուր՝ ըզ) E:
22 յողմանէ BC:
32 ի կենցաղւոյս(?) E:

## Ժ.

### ՈՂԲ ՆՈՐԻՆ ԳՐԻԳՈՐԻ ՎԱՍՆ ՈՒՆԱՅՆՈՒԹԵԱՆ ԱՇԽԱՐՀԻ ԵՒ ԵՂԾԱԿԱՆ ՓԱՌԱՑ ԵՒ ՎԱՅԵԼՉՈՒԹԵԱՆ. ՁԱՅՆԵԱԼ ԱՌ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՍԱԿ

*Ունայնութիւն ձայնեաց Սողոմոն զաշխարհ.*
*Ունայնութիւն ունայնութեանց.*
*Զի է մոլար շաւիղ եւ թիւր ճանապարհ.*
*Ունայնութիւն ունայնութեանց.*
*Որ ոչ հայի ի վեր, այլ միշտ ի խոնարհ.*
*Ունայնութիւն ունայնութեանց.*

*Յորում չէ ինչ հաստատ, այլ սուտ արհա-*
*մարհ.*
*Ունայնութիւն ունայնութեանց*
*Քարոզեաց ժողովօղն.*
*Ունայնութիւն ունայնութեանց,*
*ամենայն ինչ ընդունայն:*

*Ղօղեալ է թոյն մահու ի փարթամութեան,*
*Տարփալ նմին մաշէ զմեզ յաշխատութեան,*

*Ձեռագիր՝*
A, *թղ.* 12*բ*—13*ա*:
B, *թղ.* 16*բ*—17*ա*:
C, *թղ.* 11*բ*—12*ա*:
D, *թղ.* 196*ա*—196*բ*:
E, *թղ.* 10*բ*—11*ա*:

*վայելչական* D:
1 *Սողօմոն* A: *Սողմոն* B: *Սղոմոն* C: *Սողոմօն* E: *Սօղոմոն զաշխարհս* D:
5 *որ ոչ հայի ի վեր, այլ միշտ խոնարհ. ունայնութիւն ունայնութեանց.* չունի C:
9 *ժողովողն* D:
12 *եւ փարթամութեան* E:
13 *տարփալ* C: *տարփեալ* D:

*Թէպէտ շատք մեծացան ի յիշխանութեան,*
*Սակայն ոչ են ազատ ի կրից արտմութեան:**

*Բազմաց թուի թէպէտ գոլ սա սեպհական,*
*Բայց են պանդուխտք նոքին եւ օտարական,*
*Որք տաժանին ջանիւք աստ անմատական.*
*Եւ թողուն զամենայն ի վախճանական:*

*Գոլով կեանք մեր ունայն ի ժամանակի,*
*Երջանիկն Յոբ ասաց նման ստուերի.*
*Դաւիթ նմանեցոյց սարդի ոստայնի,*
*Եւ ոմն ասէ իբրեւ ծաղիկ թօթափի:*

*Րամեալ ազգաց քարոզ Սողոմոն ձայն տայ.*
*Ազգ երթայ եւ ազգ գայ եւ երկիր նոյն կայ,*
*Ծագի արեգակն եւ լուսին լոյս տայ.*
*Ոչ յագեցի ակն, այլ եւս ըղձայ:*

*Ի վերայ աշխարհի որք յոյժ զօրացան.*
*Յաւէտ քան զընաւս այնք ակարացան.*
*Ի հողս եւ ի զբաղմունս միշտ տառապեցան.*
*Եւ յաւուր վախճանի յոյժ վարանեցան.*

16 *բայց* C *թէպէտ գոլ սարսեցան* D:
17 *նոցին եւ յօտարական* D:
19 *ի վաղճանական* D:
21 *յերջանիկին* E:
23 *եւ ոմն ասէ* չունի E:
24 *Սողօմոն* A: *Սօղոմօն* D: *Սողոմօն* E:
26 *երկիրն* E:
27 *լուսինն* D:
31 *վաղճանի* D:

* *Ըստ վերնոյն միշտ «Ունայնութիւն ունայնութեանց» իւրաքանչիւր տողէ վերջ կրկնուած:*

Կառավարար տիրեաց Մեծն Աղեքսանդրոս
Ցորմէ ծով եւ ցամաք ահիւ սարսեցան,
Որում ազգ եւ ազինք ծառայք գրեցան.
Նմա համբարք զանձուց ոչինչ թուեցան.

Ո՞վ կարէ զոլ հզօր իբրեւ զՍամփսոն
Եւ իմաստուն մտօք որպէս Սողոմոն.
Եւ գեղեցիկ զիմօք իբր Աբիսողոմ.
Կամ տաղասաց քերթող որպէս Հոմերոն.

Բնական զիւցազանց աշխարհ սուղ ջամ–
բեաց.
Ոչ գոյ իմաստնոց հաց, ոչ հանճարեղաց.
Ոչ ընթացք թեթեւաց եւ ոչ մարտ զօրաց.
Քանզի զիպուածք բախտի են հասարակաց.

Ի յայս սուտ կենցաղոյս անձն իմ ձանձա–
րացաւ.
Ի մարդելոյդ եղբարց կարի տաղտկացաւ.
Ի չոգմող ընկերաց յոյժ վտանգեցաւ.
Որոց թողցէ Աստուած՝ թէ իսկ գրեցաւ:

Տներու առաջին տողերու սկզբնատառերը կը կազմեն՝ «Ողբ Գրիգորի»:

32 Աղէքսանդրոս E:
34 յորում D:
36 զՍամփսոն D:
37 Սողօմոն A: Սողոմօն DE:
39 տաղ սաց E:
40 զիցազանց յաշխարհ D:
47 C· որոց թողցէ Աստուած թէ իսկ գրե–
ցաւ. չունի եւ ունի քարոզեաց ժողովրդն E:

## ԺԱ·

ՈՂԲ ՆՈՐԻՆ ԳՐԻԳՈՐԻ ՎԱՐԴԱՊԵՏԻ Ի ՎԵՐԱՅ ԱՆԻ ՔԱՂԱՔԻՆ Ի ԺԱՄԱՆԱԿԻ ՄԻՆՉ ԵՒ ՆԱ Ի ՋՆՆԻՆ ԱՇԽԱՐՀԻՆ ԱՅՆՈՐԻԿ ԵՒ ՃԵՄՍ ԱՌԵԱԼ Ի ՎԵՐԱՅ ՊԱՐՍՊԱՑՆ ՆՈՐԻՆ ՋԳՆԱՅՐ ԸՆԴ ԵՐԿԱՅՆՈՒԹԻՒՆ ԵՒ ԸՆԴ ԼԱՅՆՈՒԹԻՒՆ ՇԻՆՈՒԱԾՈՑՆ, ՀԱՅԵՑԵԱԼ ՅԱՒԵՐԱԿՍ ԱՊԱՐԱՆԻՑ ԵՒ ԵԿԵՂԵՑԵԱՑ՝ ԱՐՏԱՍՈՒԵԱՑ ԵՒ ԱՍԷ

*Համայն ապանց դու գովելի,*
*քաղաքդ Անի պանծացեալ,*
*Ասպնջական թագաւորաց*
*եւ զօրաց՝ արդ մնացեալ,*
*Իբրեւ այրի լքեալ թողեալ,*
*կոխան ոտից ընկեցեալ։*
*Բնակիչք քո յաշխարհ օտար հեռացան,*
*Աւաղ, տարագիր, տարագիր՝ ո՛հ։*

*Ձեռագիր՝*
A, *թղ.* 13*բ*։
B, *թղ.* 17*բ*։
C, *թղ.* 12*բ*։
D, *թղ.* 194*ա*։
E, *թղ.* 11*բ*։

*վարդապետի* չունին DE։
*ի զնին* ABCDE։
*աշխարհի* E։
*զգայր* D։
*շինուածոյն* D։
*շինուածոյն* (?) E։
*եկեղեցւոյն* D։
1 *ապան* C։
4 *անդ մնացեալ* E։
6 *ընկեցալ* C։ *ընթերձեալ* D։

Սնուցեր դու դայեկաբար զորդիս քո,
յար գգուանօք
Առ որ դչարեալ եւ դրդուեալ
Նետողաց ազգ մախանօք
Զօրագումար ժողովեցան
ի վերայ քո պատնիշօք:
Բնակիչք քո յաշխարհ օտար հեռացան...

Կանգնեալ պատուարս եւ նետակալս
հանդէպ քո այնք մարտ եդին,
Զգեղեցիկ եւ զբարձրաբերձ
պարիսպքս իսկ փլուցին,
Զհոյակապ եւ զգմբէթեայ
կերտուածք քոյին ընկեցին:
Բնակիչք քո:

Օտարաձայն գոչիւն զօրաց
խուժադուժ մինչ բարձրացան,
Ձայն գուսանաց եւ նուագաց
որդւոց քոց ի սուգ դարձան՝
Եւ օրհնութիւնք ժամերգութեանց
յեկեղեցեայց լռեցան:
Բնակիչք քո:

10 գրփուանօք B:
10 գրկանօք D:
14 քոյ D:
20 զմրէթայ D զմրեթեայ E:
21 կերտուած BCD:
23 բարձրաձայն D:
25 եւ գուսանաց չունի՝ ձայն D:
28 B յեկեղեցայց BC եկեղեցիք D:

*Ղամբարագարդ դահաւորակք*
*եւ տաճարք քո մանկալլիցք,*
*Յորս վեհազինք եւ պայազատք*
*էին ճոխք եւ հացալիցք,*
*Այժմ անասունք տեղեկալեալ*
*շրջին ի քեզ քաղցալիցք:*
*Բնակիչք քո:*

*Սկզբնագիրք տուներու առաջին տառերու՝*
*«Հոկող»:*

## ԺԲ.

### ՏԱՂ ՈՒՐԱԽՈՒԹԵԱՆ Ի ԲՈՒՆ ԲԱՐԵԿԵՆԴԱՆՆ, ՈԳԵԱԼ ՙՆՈՐԻՆ ՀՍԿՈՂԻ Ի ԽՈՐՀՈՒՐԴ ԱՆԱՆՑ ԿԵՆԱՑ ՀԸՐ-ՃՈՒՈՂԱԿԱՆ ԱՆՃԱՌ ԲԱՐԵԱՑ

*Գարնանային հողմոյն եկեալ, (կրկնէ)*
*Անդաստանք մեր ծաղկազարդեալ.*
*Հոտ կնդրկի արդէն բուրեալ, (կրկնէ)*
*Ցուրախութեան սիրտք մեր զմայլեալ,*
*Եկայք ուրեմն, եղբարք ազնիւ, (կրկ.)*
*Ծիծաղերես առանց խեթիւ,*
*Բազմեցարուք սիրով սերտիւ, (կրկ.)*
*Արբցուք գինի ուրախ սրտիւ:*
*Քանզի ասէ փեսայն անմահ, (կրկ.)*
*Կերայք, արբէք, մերձաւորք իմ,*
*Լից, ապա, ա՛յ եղբայր, լից նազելի,*
*Լից, սիրական գինին անոյշ:*

*Բնական լոյն տաս ծաւալեալ, (կրկ.)*
*Ցօղահանդոյն ի մեզ ցօղեալ:*

*Ձեռագիր՝*

A, *թղ.* 14*ա*—14*բ*:
B, *թղ.* 18ա—18*բ*:
C, *թղ.* 13*ա*—13*բ*:
D, *թղ.* 182*ա*—182*բ*:
E, *թղ.* 12*ա*—12*բ*:

*բարեկենդանի* E:
4 *ուրախութեան* DE:
8 *գինին* DE:
13 *ցօղական դոյն* D:

*Զվարթս եւ զգլուխս գեղազարդեալ, (կրկ·)*
*Պսակ սիրոյ ի մեզ կապեալ:*
*Եկայք ապա սիրազումար, (կրկ·)*
*Պատրաստեցէք զսեղան յարմար,*
*Բերէք զգինին ուրախարար, (կրկ·)*
*Լցէք զթակոյկդ նորահնար,*
*Քանզի ասէ հարսն անարատ, (կրկ·)*
*Մուծէք զիս արդ ի տուն գինւոյ,*
*Բեր, ուրեմն իմ ազնիւ, բեր իմ սիրուն,*
*Բեր, իմ եղբայր, զբաժակն առ իս:*

*Իբրեւ զդրախտ վայրք մեր ծաղկեալ, (կրկ·)*
*Պէսպէս գունով հրաշազարդեալ,*
*Ձայն տատրակի ի սմա հնչեալ, (կրկ·)*
*Յայտնեաց զխորհուրդ մեզ հանդերձեալ:*
*Եկայք ուրեմն, իմ նազելիք, (կրկ·)*
*Ուրախացէք, մի այլ տրտմիք·*
*Ածէք արբէք, մի դադարիք, (կրկ·)*
*Յայդմ գինւոյ, զոր արդ բերիք·*
*Քանզի ասէ Դաւիթ արքայն, (կրկ·)*
*Գինի կարի ուրախ առնէ·*
*Լից ապա, ա՛յ եղբայր, լից, սիրական,*
*Լից, նազելի, զգինին անոյշ:*

17 *ապայ* D:
18 *սեղան* D:
19 *զգինիս* E:
27 *ի սմայ* D:
28 *մեր* D:
30 *տրտմիք ածէք րրէք* (sic), *մի դադարիք* B:
31 *մի այլ տրտմիք, մի դադարիք* D:
34 *գինին* D: 36 *անուշ* E:

Գոչմամբ ձայնի եղանակեալ, (կր․)
Քաղցրանուագ երգով պարեալ,
Ծիծուունք ճչմամբ օրհնակեալ (կր․)
Ջյուխտենից փառս երանեալ:
Եկայք ապա, եղբարք, սիրով, (կր․)
Նստցուք մեք չուրջ գայս սեղանով․
Զուարթացուք անոյշ գինւով, (կր․)
Զարամութիւն ի բաց դնելով,
Քանզի աւէ ժողովօղն, (կր․)
Լաւ է ուտելն եւ ըմպելն,
Բեր ուրեմն, իմ աղնիւ բեր, իմ սիրուն,
Բեր, իմ եղբայր, գրաժակն առ խս:

Ունայն ընդ վայր կենցաղս լեալ, (կր․)
Ամենակերպ խարմամբ լցեալ,
Առ որս ըղձիւ սիրտ մեր հարեալ, (կր․)
Տխրի յաւէտ մինչ ոչ հասեալ:
Եկայք ուրեմն, իմ սիրողունք, (կր․)
Սիրապումար հաւաքեսցուք,
Ծափս հարելով կաքաւեսցուք, (կր․)
Զհոգս ամենայն ի բաց դիցուք:
Քանզի աւէ Իմաստուն (կր․)
Դարձայ սրտիւ ունայնութեանց:

38 քաղձրանուագ E:
39 յօրհնակեալ E:
42 գայս չուրջ E:
43 անուշ E:
45 ժողովողն D:
52 ոչ չունի B:
53 ունին այսպէս (ոչ՝ սիրասուն) AB եւն:
54 հաւաքիցուք ABCE:

*Լից սպա, ա՛յ եղբայր, լից նազելի,*
*Լի՛ց, սիրական զգինին անոյշ:*

*Ըամից եղբարցդ իմ սիրելեաց, (կր.)*
*Պատրաստեցաւ սեղան կազմեալ.*
*Առ հաւատչեայ ժամանակեալ, (կր.)*
*Անանց ընթրեաց օրինակեալ:*
*Եկայք ապա զմի եւս արբցուք, (կր.)*
*Խաղաղութեամբ վճար տացուք,*
*Ի սէր հաստատ յարամնասցուք, (կր.)*
*Զփառս եւ զպատիւ առ Տէր հանցուք:*
*Քանզի առէ Տեառնօղն, (կր.)*
*Յիշեցէք զայս, հոգւոց հանէք.*
*Բեր ուրեմն, իմ ազնիւ, բեր, իմ սիրուն.*
*Բեր իմ, եղբայր, զբաժակն առ իս:*

*Տներու առաջին տողերու սկզբնատառերէն կը կազմուի՝ «Գրիգոր»:*

60 *անուշ* E:

63 *առ հաւատչեալ* BC, *ժամանակեալ* չիք BC:

63 *ժամանակաւ* D:

64 *ընթրեացն* D:

65 *եկայ ապայ* D:

66 *վճարս* D:

69 *ի տեառնօղն* E:

71 *ուրեմն* չունի D: *Ազնիւ, եղբայր*, գլխագրով E:

72 *բեր իմ, քաղցրիկ, զգինին անոյշ* D:

## ԺԳ.

### ՏԱՂ ՈՒՐԱԽՈՒԹԵԱՆ, ՈԳԵԱԼ ՆՈՐԻՆ ԳՐԻԳՈՐԻ ԱՌ ԵՂԱՆԱԿ ԳԱՐՆԱՆ [4]

*Արի՛ք եղբարք եկայք այսօր*
*յայգեստան, յայգեստան,*
*Ահա երգէ տատրակն աղնիւ*
*քաղցրաձայն, քաղցրաձայն.*
*Կանանչազեղ զարդարեցաւ*
*անդաստան, անդաստան,*
*Ցին եւ կռունկ եղանակեն*
*մեծաձայն, մեծաձայն.*
*Արի՛ք եկայք յայգեստան:*

*Ձեռագիր՝*

| | |
|---|---|
| A, *Թղ.* 15*ա—բ*: | D, *Թղ.* 180*ա*: |
| B, *Թղ.* 19*ա—բ*: | E, *Թղ.* 13*ա*: |
| C, *Թղ.* 14*ա—բ*: | M, *Թղ.* 10*ա—բ*: |

7 *կռունկն* M.— *կռունկք* BCE:

---

4 *Այս տաղը Երեւանի Մաշտոցի անուան Մատենադարանի Թ.* 8764 *Ձեռագրին մէջ* (*Թղ.* 16*բ*) *խորագրուած է «Տաղ գեղեցիկ յօրինեալ յՕշականցի Գրիգոր աստուածաշնորհ վարդապետէ ի վերայ ծաղկանց եւ Թռչնոց»: Իսկ Թ.* 5066 *Ձեռագրին մէջ* (*Թղ.* 135*ա*) *նոյն տաղն ունի այսպիսի խորագիր մը՝ փակագծերով՝ «(Տաղ ի վերայ Թռչնոց ի Գրիգոր վարդապետէ) Օշականցւոյ»: — Այս տեղեկութիւնները կը պարտիմ սոյն Մատենադարանին տնօրէն դկտր. Լ. Խաչիկեանին:*

Ռամեալ կաքաւք եւ արագիլք
համաձայն, համաձայն,
Կարկաչելով եղանակեն
միաձայն, միաձայն.
Ցոպոպ բեկբեկ ղօղանջելով
տարաձայն, տարաձայն:
Զգալուստ գարնան մեզ գուշակէ
բարձրաձայն, բարձրաձայն:
Արի՛ք ելցուք յայգեստան:

Թռչիս առեալ ծիծռունք եւ ճայք
ճչալով, ճչալով.
Եւ համօրէն երամք թռչնոց
պարելով, պարելով.
Ի տես ծաղկանց իջեալ յայգին
խնդալով, խնդալով.
Գան ի յողջոյն մանուշակին
գնծալով, գնծալով:
Արի՛ք ելցուք յայգեստան:

Ուրախ ուրախ պխլպխլն անդէն
ձայն առնէ, ձայն առնէ.
Վասն վարդին խանդակաթեալ
հարցանէ, հարցանէ.
Զարտուտն յետս պատգամաւոր
առաքէ, առաքէ,

14 ղօղանչելով (?) E:
25 ի ողջոյն E, մանուշակին C:
28 անդրէն E:
30 խանդաղատեալ D:
32 ի յետս E:

*Զղումրին առեալ պաշտօնատար*
*կանչ առնէ, կանչ առնէ։*
*Արի՛ք ելցուք յայգեստան։*

*Իւսեալ ի մի պէսպէս ծաղիկ*
*հաւաքեալ, հաւաքեալ,*
*Դաստայ դաստայ փունջ ռեհան*
*զարդարեալ, զարդարեալ.*
*Շուշան ամբուլ եւ սուսամբար*
*ժողովեալ, ժողովեալ.*
*Կազմեալ պսակ առ տարփալին*
*դարձ առեալ, դարձ առեալ.*
*Արի՛ք ելցուք յայգեստան։*

*Նուռն եւ նշին եւ ընկուզին*
*զարդարեալ, զարդարեալ,*
*Արմաւենին եւ ձիթենին*
*տերեւեալ, տերեւեալ,*
*Որթն եւ խնձոր եւ թզենին*
*դեղդեղեալ, դեղդեղեալ,*
*Սաղարթախիտ ոստովք ցնծան*
*ձայնակցեալ, ձայնակցեալ։*
*Արի՛ք ելցուք յայգեստան։*

*Տներու առաջին տողերու սկզբնատառերը կը կազմեն «Գրիգոր»։*

37 *իւծեալ* D։
39 *դայստայ դայստայ* BC։ *փունճ* ABCDEM։ *ռէհան* D։
41 *սիւմպիւլ* DE։
41 *սուսամպար* BC։
50 *խնծոր* E։
52 *սաղարդախիտ* ABC։ *Սաղարդախիթ* E։

## ԺԴ.

### ՏԱՂ ՋՈՒԱՐՃԱԼԻ ԱՍԱՑԵԱԼ ՆՈՐԻՆ ԳՐԻԳՈՐԻ ԱՌ ԵՂԱՆԱԿ ԱՄԱՐԱՆ

*Ահաւասիկ վարձք մշակաց,*
*Եւ երկք քրտանց երկրագործաց,*
*Եւ տոհմականք անդաստանաց,*
*Լցաւ յաշխարհ համատարած:*

*Սկզբնական հրաման էին,*
*Առ այս շնորհ նկատէին,*
*Որ հրամայեաց իւր պատկերին,*
*Կերիցես հաց քրտամբ քոյին:*

*Արդ. գոհութիւն Ստեղծողին,*
*Որ ոչ ստեաց իւրում բանին,*
*Այլ գթացեալ իւր պատկերին,*
*Արդիւնացոյց զվաստակ Նորին:*

*Ձեռագիր՝*

A, *թղ.* 16*ա*—*բ*:
B, *թղ.* 20*ա*—*բ*:
C, *թղ.* 15*ա*—*բ*:
D, *թղ.* 179*ա*—*բ*:
E, *թղ.* 13*բ*—14*ա*:
M, *թղ.* 11*ա*—*բ*:

*ամառան* D:

8 երեք բառ գրուած (*արինացոյց զվաստակ նո–րին*) եւ ջնջուած եւ ապա այս տողը գրուած E:

10 *զոր ոչ* E:

12 *արինացոյց* E:

Ցնծան այսօր ազգ եւ ազինք,
Ի դալարուջ իբրեւ գառինք,
Զի ուռճացան դաշտք եւ լերինք,
Յորոց վերայ ցօղեաց երկինք:

Նկայք յընթրիս այս սեղանոյ,
Արարողին մեր Աստուծոյ,
Զոր պատրաստեաց յարդեանց հողոյ,
Յեղանակի յամարայնոյ:

Անդաստանք մեր բեղմնաւորեալ,
Եւ վայրք համայն վայելչացեալ,
Հովիտք եւ բլուրք կանանչացեալ,
Շնորհօք էին կան զարդարեալ:

Լրումն ահա հրամանին,
Թէ ի յերկրէ բոյսք բղխեսցին,
Ծաղկեալ պտղովք զարդարեսցին,
Եւ ըստ ազգի սերմն ի նոսին:

Գունակ գունակ զարմանաւոր,
Ոմն ունելով հարիւրաւոր,
Եւ այլ ոմն վաթսունաւոր,
Եւ այլ ոմն երեսնաւոր:

20 եղանակի C:
26 ի յերկրի E:
27 ծաղկեալ C:
14 իրր M:
17 յայս E:
18 յԱստուծոյ D — Աստուած (?) M:

Բոտեալ ըստ չափ յոյժ բազմաւոր ,
Աճեալ թուով հազարաւոր ,
Եւ այլ յոլով ճոխ բիւրաւոր ,
Եւ անհամար արգասաւոր :

Ի գիրկս առեալ ահա տանին ,
Զպտուղ իւրեանց յորովայնին ,
Զուարճացեալ ըստ Սաղմոսին՝
Թէ ցնծասցեն ծառք անտառին :

Գերանդաղէն համայն եղեալ ,
Մշակք անդոց դան ժողովեալ ,
Զի արտորայք սպիտակեալ ,
Կան աւազիկ ի հունձս հասեալ :

Որք մշակեն ղայգիս քրտամբք ,
Եւ գջրարբի պարտէզ երկամբք ,
Դարձեալ ի տուն բարձեալ բեռամբք ,
Ոմանք իշով , ոմանք եզամբք :

Բենական բանք Սուրբ Սաղմոսին ,
Յայս եղանակ վերահային ,
Զի որք լալով սերմանէին ,
Արդ ցնծալով հնձեն նոքին :

35 յոլովք D եւ չունի E: յայլ յոլով E:
37 ահայ B:
45 քրտամք D:
46 երկամք D:
47 բեռամք D:
48 եզամք D:
50 վերայ կային D:

Ի կալ, ի տուն եւ ի հնձան,
Արդիւնք յերկրէ ժողովեցան,
Պարգեւողին զայս ամենայն,
Բիւր գոհութիւն հազար բերան:

Տներու առաջին տողերու սկզբնատառերէն կը կազմուի՝ «Առաքեալ Գրիգորի»:

54 արդեանք D:

## ԺԵ·

## ՏԱՂ ՍԻՐՈՑ ՈԳԵԱՅ ՆՈՐԻՆ ԳՐԻԳՈՐԻ ԱՌ ԵՂԱՆԱԿ ԱՇՆԱՆ

Զօրեղ փչումն ուժդին հողմոյ ,
Եկն ի լերանցն հիւսիսոյ ,
Հարան համայն ծառք ի տապոյ ,
Ո՛հ իցէ արդեօք , ո՛հ իցէ արդեօք
Ծաղկիլ սոցա վերստին :

Ուրախարար որթն ազնիւ ,
Ի սուգ նստեալ ողբայ ձայնիւ ,
Տարան , առէ , զգինին սայլիւ :
Ո՛հ իցէ···

Խիծեալ անձամբ հողմահարեալ ,
Թուփ վարդենւոյն գեղափայլեալ ,
Տերեւաթափ ի սպառ եղեալ :
Ո՛հ իցէ···

Արմաւենին եւ ձիթենին ,
Որք ընդ երեկս փայլէին ,
Խորչակահար արդ տեսանին :
Ո՛հ իցէ···

Ձեռագիր՝

| | |
|---|---|
| A, թղ· 17ա : | D, թղ· 189ա : |
| B, թղ· 21ա : | E, թղ· 14բ : |
| C, թղ· 16ա : | M, թղ· 12ա : |

6 որդի D:
11 վարդենոյն DE:
15 ընդ երեկն(°) E 16 տեսանեն EM:

Ռամեալ սաղարթ կանանչաղեղ
Փոխեալ է արդ գոյն անշքեղ,
Զորս հոսէ քամին զօրեղ:
Ո՜հ իցէ...

Թղենին թարմ պարարտաբեր,
Առ ընկուզին գոչէ ի վեր,
Առ նշենին լալ քաջաբեր:
Ո՜հ իցէ...

Ոստաքանցեալ ծառք ամենայն,
Եւ անպտուղ եղեն համայն,
Ի տերեւոց ի սպառ ունայն:
Ո՜հ իցէ...

Խիւծեալ սիրտ իմ ի յիս հալի,
Առ խնձորին յոյժ նուաղի,
Զի գեղեցիկն այն չերեւի:
Ո՜հ իցէ...

Նռնենին լայ եւ արտասուէ,
Առ հոմացեղսն ձայն առնէ,
Ողբակցելով նոցին երգէ:
Ո՜հ իցէ արդեօք...:

Տներու առաջին տողերու սկզբի գրերը կը կազմեն՝ «Զաւարթուն»:

22 թարմ D:
24 լեալ D:
27 այս տունը ամբողջապէս չունի D:
31 խնձորի D: խնծորին E:
35 հոմացեալսն D:

## ԺԶ.

### ՏԱՂ ԱՂԷՏԱԿԱՆ ԵՐԳՈՎ ԱՍԱՑԵԱԼ ՆՈՐԻՆ ԳՐԻԳՈՐԻ ԱՌ ԵՂԱՆԱԿ ՁՄԵՐԱՆ

*Եղանակ ձմերան ահա ժամանեալ,*
*Ծառք եւ բոյսք ամենայն եղեն դօսացեալ,*
*Աղբերք եւ գետք համայն ի սպառ սառու-*
*ցեալ,*
*Սարսափմամբ սաստանի անձն իմ վշտացեալ:*

*Բախճանական վայրք մեր ամէն ծաղկալից,*
*Տեսանին աւանիկ համայն ձիւնալից*
*Առապարք եւ հովիտք սաստիկ բքալից:*
*Սարսափմամբ...*

*Գոչումն ձիւնաբեր հողմոյն ահագին,*
*Բաղխելով բեկանէ զսիրտ իմ ցաւագին,*
*Գուշակելով զտագնապ աւուրն ահեղին:*
*Սարսափմամբ...*

*Ձեռագիր՝*
A, *Թղ.* 17*բ*—18*ա*:
B, *Թղ.* 21*բ*—22*ա*:
C, *Թղ.* 17*բ*:
D, *Թղ.* 188*ա*:
E, *Թղ.* 15*ա*:
M, *Թղ.* 12*բ*—13*ա*:

1 *ձմեռան* D:
6 *տեսանի* ABCDEM:
7 *առապար* E:
9 *հողմոյ* C:

Գեղեցիկ Արարած ծաղկափայլ լերին,
Երեսք սքօղեցեալ ծածկութիւ ծածկին,
Տուրջանակի անձամբ մառախուղ ձգին:
Սարսափմամբ...

Բամեալ լերինք համայնք դատերք դշխոյին,
Տուրջանակի գնովաւ պատեալ պարսպին,
Անզարդ անշուք դիմօք դէպ ի նա հային:
Սարսափմամբ...

Ի դուռն անկեալ յերկիր Արայն ադախին,
Վերահայելով միշտ առ իւր խնկուհին,
Բողոք բարձեալ դոչէ յամպոց մԹաղին:
Սարսափմամբ...

Գերագոյն պանծալի լերանց Թագուհին,
Նստարան եւ տեղի նոյեան տապանին,
Երեւի ձիւնազգեաց յոյժ ամենեւին:
Սարսափմամբ...

Ողորմելի դիմօք նստեալ հարճ նորին,
Համանուն հարազատ նորա սիրելին,

14 ծածկեն M:
18 նովաւ D:
19 դիմօքն E:
21 ի դուջն A: առ այն ադախին D:
22 վայր հայելով D:
23 բացեալ: ամպոց D:
29 ասկէ վերջ եւ յաջորդ տաղը չկան. բայց բուղթ մը դատարկ ձգուած է արտագրելու համար C:

*Յեցեալ ի նա ողբոյ իբրեւ տրտմագին։*
*Սարսափմամբ...*

*Բողջական կեանք մեր այսու ցուցանին*
*Սոյն օրինակ լինիլ յաւուր վախճանին,*
*Յորժամ գայցէ առ մեզ պատգամ կոչողին։*
*Սարսափմամբ...*

*Ի քեզ կարդամք Աստուած՝ Տէր եւ արարիչ,*
*Ողորմած մարդասէր՝ յոյս եւ կեցուցիչ·*
*Դարձո ի մեզ զարուն՝ բնութեանց նորոգիչ։*
*Սարսափմամբ...*

*Տներու առաջին տողերու սկզբնագրերը կը կազմեն՝ «Երգ Գրիգորի»։*

33 *բողջական մեր ուսուցանէին* [*կեանք* չունի] E։

38 *ողորմած սէր՝ յոյս* B։

## ԺԷ·

### ՏԱՂ ՍԻՐՈՅ ԱՍԱՑԵԱԼ ՆՈՐԻՆ ԳՐԻԳՈՐԻ Ի ԴԷՄՍ ԱԶԳԱՑԻՆ ԲԱՐԵԿԱՄԻ ԵՒ ԸՆՏԱՆԻՈՅ ՅԱՆՃԱՆՈԹ ԱՇԽԱՐՀ ՀԵՌԱՑԵԼՈՅ

*Նմանեցայ հաւալասան, աւաղ, աւաղ,*
*սիրահարեալ, նաղելլի, սիրոյդ անման·*

*Ողորմելի անձն իմ տաղի, աւաղ, աւաղ,*
*զքեզ տեսանել, նաղելլի, լալով դեգերի:*

*Բախճական սիրոյ քոյին, աւաղ, աւաղ,*
*գերեալ եղեւ, նաղելլի, անձն իմ ցաւա-*
*գին:*

*Ի մէջ այեաց ծովու ծփիմ աւաղ, աւաղ·*
*սաստիկ սիրով, նաղելլի, ես միշտ դե-*
*գերիմ:*

*Նետիւ հարայ յանկարծակի· աւաղ, աւաղ·*
*զհետ քոյին, նաղելլի, մինչ գալ կամէի:*

*Ձեռագիր՝*
A, *թղ.* 18*բ*:
B, *թղ.* 22*բ*:
C, *չունի*:
D, *թղ.* 195*ա*:
E, *թղ.* 15*բ*:
M, *թղ.* 13*բ*:

2 *անման* M:
(3 *գերեալ եղեւ նաղելլի* E) :
4 *դեքերի* E:
9 *դեքերիմ* E:
14 *յոյժ եւս ի ջէն* D:

Գնացք ոտից իմ կաղացան. աւաղ, աւաղ.
Եւ եւս ի քէն, Նազելի, յոյժ յոյժ հե-
ռացան:

Րոամամբ սրտի անձն իմ թախծեալ, աւաղ,
աւաղ.
Մնաց կարօտ, Նազելի, տեսոյդ դեղա-
փայլ:

Ինձ բաց ի քէն ոչ ոք ունիմ. աւաղ, աւաղ.
Ի սէր քոյին, Նազելի, տապիմ եւ մաշիմ:

Գետք արտասուաց գլխ ողողեն. աւաղ,
աւաղ.
Ի դուր մահու, Նազելի, դանձն իմ
ընկղմեն:

Ուր եւ իցեմ զքէն խորհիմ. աւաղ, աւաղ.
զինչ եւ խօսիմ, Նազելի, Նախ ի քեզ
հայիմ:

Րամեալ սէր քո զսիրտ իմ մաշեաց. աւաղ,
աւաղ.
Ի բոց հրոյդ, Նազելի, ի սպառ զիս
հալեաց:

Ի փախճանի զքեզ ոչ գտի. աւաղ, աւաղ.
Ուր եւ իցես, Նազելի, Տէր ընդ քեզ լիցի:

Տողերու առաջին գրերը կը կազմեն՝ «Նորին Գրիգորի»:

24 ի խոր մահու D:
29 քոյ D:
33 ի փաղճանի D:

## ԺԲ.

## ՅԱԽՈՒՐՍ ԵՐԱՇՏՈՒԹԵԱՆ ԱՍԱՑԵԱԼ ԳՐԻԳՈՐԻ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ [5]

*Ծագումն անճառ Հօր Միածին,*
*Որդիդ Աստուած Բանդ անքննին,*
*Արարչական Աջով քոյին,*
*Յօղեա զցօղդ երկնային:*
*Տէր ողորմեա, Տէր ողորմեա, Տէր ողորմեա:*

*Բիւր քանքարացս եմք պարտապան,*
*Եւ առ օրէնս քո յանցաւոր,*
*Անոխակալ Տէր դատաւոր,*
*Թող զպարտիս մեր բազմաւոր:*
*Տէր ողորմեա, Տէր ողորմեա, Տէր ողորմեա:*

*Աղաչանօք փայտիդ կենաց,*
*Եւ սոսկալի սուրբ Բեւեռացդ*

*Ձեռագիր՝* E, *Թղ.* 67*ա*:

2 *անքնին* E:
7 *անցաւոր* E:

---

[5] *Այս երգէն Թ.* 884 *Ձեռագիրը միայն առաջին երկու տուները ունի (չէ չարունակուած, դատարկ տեղ կայ գրելու) առ խորագրով «Երգ ասացեալ ի դէմ սուրբ պատարագին, ասացեալ աղերս նորին Գրիգորի բանի Տեառն սպասաւորի» (Թղ.* 19*ա): Իսկ Երեւանի Մաշտոցի անուան Մատենադարանի Թ.* 8540 (*էջ* 98) *Ձեռագիրն այս տաղը ամբողջապէս ունի: Խորագիրն է՝ «Երգ ասացեալ Ուշականցի Գրիգոր վարդապետի»:*

Փրկեա զմեզ ի ծփանաց,
Ալեկոծեալ ծովու մեղաց:
Տէր ողորմեա, Տէր ողորմեա, Տէր ողորմեա:

Յիշատակաւ սուրբ դեղարդեան,
Եւ յորդահոս քոյդ արեան,
Բաց մեզ զդուռն ողորմութեան,
Եկեղեցւոյս քո հայկազեան:
Տէր ողորմեա, Տէր ողորմեա, Տէր ողորմեա:

Իւրաքանչիւր տաղին համար նշանակուած է թէ ո՞ր տաղի եղանակով կամ նմանի պիտի երգեցուի[6]:

Ա. Յարմար ձեւով պատուական պատուական, Խորհրդով կերտեալ խորան:

Բ. Փրկաւէտ մահուան քո գինս, որ անկեալ:

Գ. Յորժամ նշան քո սուրբ խաչին յարեւելից փայլեսցին (sic):

Դ. Մերձաւոր իմ գեղեցիկ, աղաւնի իմ նազելի:

Ե. Յիսուս Որդի եմ միածին, որ բեւեռեալ կաս ի խաչին՝ աւաղ:

[6] Ըստ Թ. 884 Ձեռագրի (A = Բնագիր): Միւս ձեռագիրներու տարբերակները նկատի չեն առնուած:

Զ. Իմ անման յոյժ գովելի, արարեր գիս ողորմելի:

Է. Զիս քո սիրոյն ով նուաղելի, հովերն առեր կու:

Ը. Ահա եհաս գարունն ազնիւ, յորում համայն գար(գարին). Բեօրփիւլ օղլու խաղն է:

Թ. Աւաղ անկայ յոտար երկիր ամայի:

Ժ. Էջմիածին ծնող, մայր մեր ցանկալի, ուրախ լեր երկինք:

ԺԱ. Տիրամայրն հանդէպ Որդւոյն ի խաչին կայր արտմագին:

ԺԲ. Ի դոյն քեամանչայի, այն որ առէ Իդնադխոս բեր գկթգայն:

ԺԳ. Գէձայ կխնիւդ արգլմանրն չաքարամ չաքարա(մ):

ԺԴ. Աֆէմարմ կխւլ պահար օլախ սէ-ֆալար վախտի տիր չինախ:

ԺԵ. Սարասկեար տըր էմին փաչայ, հիւքմի գէչար տաղ ու դաչայ:

ԺԶ. Ի տանէն Թորգոմեան, յազգէն Յաբէթեան, ի կարգէն Յիսուսեան:

ԺԷ. Գալաթան կէլիր գայիք ա՛ման, աման:

Մխիթարեան Մատենադարանի Թ. 884–885, 1090 եւ 1142 Ձեռագիրները Յիշատա-

կազրութիւններ չունին: Երեւանի Պետ. Մատենադարանի Թ. 6682 ընդհանուր անուանագրէն յետոյ ունի՝ «Նարգենիս օրինակեալ եղեւ ի Կարին քաղաքս յեկեղեցւոյ պանդուխտ վարժարանիս եւ ձեռամբ Մովսէս վարդապետի, աշակերտ խակակիրթ մահտեսի Համբարձումիս: Ի թուոջ Փրկչին 1820 եւ ի թուին Հայոց ՌՄՀ եւ Սեպտեմբերի ԺԱին ի Կարին»: Ունի նաեւ Գր. Օշականցւոյ կենսագրութիւնը (գրուած Յովհ. Կարնեցիէն): Իսկ Թ. 7672ին ճակատը գրուած է «Տիրացու անարժան Բարսեղս..» եւ վերջը կայ՝ «Ես ամենանուաստ Յօհաննէս չպետ նոտարս գրեցի զայն տետրակս ՌՄԽԹ թուոջ եւ Ապրիլի ԺԷ. ի քաղաքս Կարին ի վայելումն Տէր Յօհաննիսեան տիրացու Պօղոսին»: Այս՝ «Յետնեալ եւ ամենանուաստ Բարսեղ չպետ նոտարս գրեցի զայն տետրակս ի ՌՄԾԷ թուոջս եւ Ապրիլի ԺԸ ի քաղաքս Եկլին(°) ի վայելումն տիրացու Խաչերեան տիրացու Բարսեղ»:

Գրիգոր Օշականցւոյ տաղերէն մաս մը առթական են կամ պարագաներու ազդեցութեան տակ յօրինուած: Ապրած ու տեսած է հայաստանեան տարւոյն չորս եղանակները, նկատած անոնց տուած փոփոխութիւնները բոյսին ու ծառին, անասունին եւ առուին վրայ: Հրճուած է բարին ու գեղեցիկը տեսնելով եւ մութին ու մռայլին առջեւ տրխրած: Շրջած է Անիի պարիսպներու վրայ.

յիշած հին փառքերը եւ խռովուած ու յուզուած աւերակներու կոյտերու ի տես : Ներկայ եղած հայ դեղջուկին ու սերմանացանին աղօթումին, յուսալից աշխատանքներուն եւ բեռնարարձ օրհնեալ հունձքին ու այգեկութքի խրախճանքին : Կը հրաւիրէ ·

Եկայք արա սիրազումար,
Պատրաստեցէք գսեղան յարմար
Բերէք գգինին ուրախարար ·
Լցէք գթակոկով Նորահնար :

Կը յիշէ բարեկամներ եւ սիրելիներ, որոնք օտարութեան մէջ կը տուայտին ու կը հառաչէ երկխօսով՝ վերստին չտեսնելու : Կը նկատէ կեանքն ու հարստութիւնը — երկուքն ալ անկայուն — եւ կը ցանկայ անդենական երանութեան յաւերժական : Եկեղեցական է · իր տաղերուն մէջ՝ աչքը սեւեռուն Աստուծոյ եւ կրօնի պարզեւած լոյսին ու յոյսին : Կը ճանչնայ մարդկային սիրտը եւ անոր ազնուացումին ի խնդիր է յարատեւ :

Բայց անոր երգերն ու տաղերը տուժած են արուեստէ ու բովանդակութենէ իր անուան գրերու անհրու առաջին բառերու ընտրութենէն, մանաւանդ «Ր» գրին կրրկնումի հետեւանքով : Տուժած նմանապէս եղանակներու յարմարեցումով, ինչպէս Յովհաննէս Կարնեցւոյ տաղերու մասին խօսած

տանն ես այս կէտերուն մասին արտայայտուած եմ: Դարձեալ զանոնք Ս. Գրքի հետ սերտ յարաբերութեանց մէջ դնելով, որ ի հարկէ ունի նաեւ իր բարերար ազդեցութիւնն անոնց վրայ: Սակայն անոնց չէ կարելի զլանալ յուզականութիւն, խորք ու կեանքի փիլիսոփայութիւն՝ խարսխուած քրիստոնէական ճշմարտութիւններու վրայ[7]:

[7] ԺԲ. տաղը կարծես գրուած է Յովնաթան Նաղաշի «Ուրախութեան տաղեր»ու ընթերցումէն յետոյ (Հմմտ. Մնացականեան — Նազարեան, Նաղաշ Յովնաթան, Բանաստեղծութիւններ, Երեւան 1951. էջ 164—88):

Վիեն. Մխիթարեանց Մատենադարանին Թ. 156 ձեռագիր Տաղարանը ունի քանի մը տաղեր, որոնց տուներու սկզբնատառերը կը կազմեն «Մովսէս»: Դարձեալ անոնցմէ ոմանց խորագրին մէջ կայ. «Տաղ առ կոյս Մարխամ Մովսէսի ասացեալ Արզրումեցւոյ» կամ «Տաղ առ սուրբ կոյսն Մարխամ ումեմն Արզրումեցոյ (Մարխամ կոյս երանեալ». Հմմտ. Տաշեան Հ. Յ. Մայր ցուցակ Մատենադարանին Մխիթարեանց ի Վիեննա, էջ 459): Իսկ Թ. 160 Ձեռագիր Տաղարանին մէջ կայ. «Ողբ ի վերայ ազգին մերոյ, ասացեալ ի Կարնեցի Մովսէս դպրէ» (անդ էջ 469):

Մովսէս, քանի որ տաղեր ունի, ուրեմն տաղասաց է, նմանապէս քանի որ Արզրումցի կամ Կարնեցի կը յորջորջուի, յայտնի է թէ կա՛մ Կարին քաղաքին մէջ եւ կամ անոր նահանգին մէջ ծնած կամ ապրած ըլլայ: Թէ ի՛նչ պարագաներու տակ իր կեանքը անցուցած է եւ ի՛նչ գործեր ըրած, չենք գիտեր, միայն այսքանը ծանօթ է որ դպիր էր (Հմմտ. վերը): Անոր տաղերու Ձեռագիրներու մէջ եղած արտագրութիւններէն կրնանք հետեւցնել որ ԺԸ. դարու տաղասաց ըլլալու է: Աճառեան նկատի ունենալով որ

անոր տաղերը կը գտնուին 1758ին գրուած վերոյիշեալ Թ. 156 Տաղարանին մէջ, կը գրէ. «Մովսէս Կարնեցի տաղասաց, նախ քան 1758» (Անձնանունների Բառարան, Գ. Հտր. էջ 449)։ Այդ թուականն աւելի կը հաստատուի եւ Մովսէսի տարիքը կը բարձրանայ, երբ նկատենք որ Թ. 369 ձեռագիր Տաղարանը (Նոյն Մատենադարանին Մխիթարեանց) արտագրուած է իբր 1738—46ին եւ անոր մէջ կայ Մովսէսի անունով տաղ մը (Հմմտ. Տաշեան, անդ էջ 820)։

Չենք կրնար հաստատել որ Մովսէս անուան տակ մեզի հասած բոլոր տաղերը միեւնոյն անձէ ըլլան, բայց անոնցմէ մաս մը ստոյգ Մովսէս Կարնեցիէն է։ Մովսէս[1] անուան տակ մեզի հասած տաղերու մեծագոյն մասը կը հրատարակենք եւ իւրաքանչիւրի մասին ստորեւ կ՚արտայայտուինք, որքան որ կարելի է մեզ։

Հրատարակութեան եւ համեմատութեան համար աչքի առջեւ ունինք հետեւեալ ձեռագիրներն ու տպագիրները.

Թ. 156 = A. (գրուած 1758ին. Հմմտ. Տաշեան, անդ էջ 458)։

Թ. 160 = B. (գր. 1796—1827. անդ էջ 465)։

Թ. 369 = C. (գր. 1738—46. անդ էջ 820)։

Թ. 412 = D. (գր. 1765. անդ էջ 862)։

Թ. 514 = E. (գր. 1792. անդ էջ 985)։

Թ. 944 = F. (գր. ԺԸ. դար. Հմմտ. Ոսկեան Հ. Հ. Մայր ցուց. Բ. հտր. էջ 528)։

Թ. 1042 = G. (գր. Ի. դար. Հմմտ. Ոսկեան, անդ էջ 620)։

Թ. 577 = H. (գր. 1741—42, Ոսկեան, անդ էջ 13)։

*Այս Ձեռագիրներէն շատերը տառասխալներով լի են, ատէպ ուղղեցինք եւ մասով մը նշանակեցինք։*

*Կոստանեան Կ. Նոր ժողովածու, Պրակ Ա—Դ. Միջնադարեան Հայոց Տաղեր եւ եւ Ոտանաւորներ, Թիֆլիս*, 1892 = K։

*Բազմավէպ* (1849, 1858, 1862, 1870, 1875) = P.։

*Գիրք դպրութեան եւ Տաղարան, տպ. Կ. Պ.* 1714 = M։

*Տաղարան, տպ. Կ. Պ.* 1740 = N։

---

[1] *Կայ Մովսէս Արծկեցի մը, որ ոտանաւոր գրած է Ջհանշահի եւ Ուզուն Հասանի պատմութիւնը (Ալիշան, Հայապատում,* էջ 127) *եւ Մովսէս Գանձասացի մը, որ Վարդանանց մասին շարական մը եւ գանձեր յօրինած է (Հմմտ. Բազմավէպ* 1862, էջ 174) *եւ Աճառեան Հ. (Անձնանուններու բառարան Գ.* էջ 440), *դարձեալ՝ Մովսէս Բջնեցի, որ հեղինակ նշանակուած է «Եղեալ հարսն անմահին» տաղին (Հմմտ. Կոստանեան, Նոր ժողովածու. Գ.* էջ 75)։

## Ա·

### ՏԱՂ ՅԱՐՈՒԹԵԱՆ ՓՐԿՉԻՆ, ՅՈՐԺԱՄ ՀԱՆԴԻՊԵՑԱՒ ՄԱԳԴԱՂԵՆԱՑՒՈՅՆ Ի ՊԱՐՏԻԶԻՆ

*Մարիամ Մագդաղենին*
*Փարէր ի մէջ պարտիզին*
*Եւ հանդիպեալ Յիսուսին·*
*Ասէ զի՞ լաս, դու ով կին,*

*Զի՞ լաս, զի՞ լաս, զի՞ լաս·*
*Կամ զո՞ խնդրես ցաւագին·*
*Մի լայր, մի լայր, մի լայր,*
*Ես եմ Որդին միածին։*

*Յորժամ լուաւ զձայն Փրկչին,*
*Առ ոտս անկեալ լալագին,*
*Ասէ, Մի մերձենար յիս,*
*Զի չեմ ելեալ առ Հայրն իմ։*
*Մի լայր, մի լայր եւն* (կրկնել իւրաքանչիւր տունէ վերջ)։

*Վեհին անմահ արքային,*
*Եմ Հօր Որդի ծոցածին·*

*Ձեռագիր՝*

A, *թղ.* 26*բ*—27*ա* (*բնագիր*)։
C, *թղ.* 13*ա*—13*բ*։
G, *թղ.* 375*ա*։

1 *Մագատաղենին* G։ *Մաքթաղենի* C։
4 *օվ* A, *ով դու կին* G։
6 *մի լար, մի լար, մի լար* CG։
10 *Որժամ* A։ ապա՝ *արդային, եղբարձն, ղնտին եւն* A։ *Նաեւ* C *չատ տառասխալներ ունի*։

*Իջի յարդանդ սուրբ Կուսին,*
*Առի զմարմին մարդկային:*

*Սաղարթաթափ, յարմատին,*
*Բեւեռեցայ ի փայտին,*
*Պատեալ (ի) գերեզման եղին,*
*Յարեայ կամաւ Հօր վերին:*

*Երթ դու պատմեա եղբարցն իմ,*
*Այն մեռատան սուրբ գընդին,*
*Ի Գալիլեայ ժողովին,*
*Եւ անդ տեսցեն զսիրելին:*

*Սլացիր որպէս զարծուի,*
*Տուր աւետիս Պետրոսի,*
*Ասա զՏէրն ձեր տեսի,*
*Զի կայր ի մէջ պարտիզի:*

16 *մարմին* A:
17 *Սաղարթախոխա արմատին* C, *արմտին* A:
23 *Հետեւին* CG: 24 *սիրելին* A:
25 *զարծուին* G: 26 *Պետրոսին* G:
27 *զՏէր* G: 28 *պարտիզին* G:

*Տաշեան, Մայր ցուցակ էջ* 459 (*Թ.* 156), *էջ* 820 (*Թ.* 369), 892, *Ոսկեան, Մայր ցուց. Բ. էջ* 681, *Թ.* 1042), *ուր* (*Թղ.* 375*ա*) *խորագրուած է «Տաղ ի Մովսէսէ Խորենացւոյ ասացեալ վասն Որդւոյն Միածնի»: Աւելորդ է ըսել որ այս Խորենացիին գրչէն չէ:* — *Այս եւ ուրիշ քանի մը տաղեր Մովսէսի անուան տակ կան ի* Tübingen, *հմմտ.* Finck und Gjandschezian, Verzeichnis der arm. Handschriften der Königl. Universitätsbibliothek zu Tübingen, *էջ* 97—98:

Բ.

ՏԱՂ ԱՌ ՀՈԳԻՆ ՍՈՒՐԲ

Մաքրափայլ տեսուդ կարօտ եմ, սէր իմ, եկ առ իս,
Զի կարի խանդակաթ եմ, մի խեթիւ հայիր յիս,
Մինչ ունիմ այլ գերունակ ճարակ իմ սըրտիս.
Մի (յ)ամեր, խոկոյն սէր ունիմ, փութով եկ առ իս:

Որ սրտամամբ իջեր ի վերուստ նըման հողմոյ,
Որոց արժան էր արբուցեր զբաժակ սիրոյ,
Արդ մի յեռներ եւ որոչեր զիս ի շնորհաց քոց.
Մի (յ)ամեր...:

Վանեալ յաղթեաց ինձ թշնամին, նկուն արար զիս:
Հաստատ աղեղամբ լարեալ ուժգին նետիւ հարու յիս,
Հար ինձ նը(պաստ) եւ ձեռընտու աղերախտիս.
Մի (յ)ամեր...:

Սէր իմ, ո՞վ է որ նմանի գեղով նազելոյդ,
Եռափափաք կամ կարօտեալ սիրով նայելոյդ.

Այց առնելով այց արայ ինձ, ողորմեայ գե-րոյս·
Մի (յ)ամեր . . . :

Եմ ծարաւի, զիս զովացոյ ախտից վտա-կաց,
Մի եղջերի եմ փափաքող ի ջուրց աղբերաց,
Արբոյ եւ ինձ ուրախարար աղբերէդ շնոր-հաց·
Մի (յ)ամեր . . . :

Սրտաւ եղէ ի մէջ աղանց Թափուր մնա-լով·
Խանդարեցայ ուսմանց բանից խիստ (յ)ա-պաղելով,
Մինչ երբ գոչեմ եւ հառաչեմ, ողբամ փա-րելով·
Մի (յ)ամեր, իսկոյն սէր ունիմ, փութով եկ առ իս:

Ձեռագիր՝
A, Թղ. 33բ—34ա (բնագիր):

28 Պիտի ըլլայ՝ ուղխից:

Տաշեան, Մայր ցուցակ էջ 459, բնագիրը շատ տառասխալներ ունի:

## Գ.

## ՏԱՂ ԱՌ ՍՈՒՐԲ ԿՈՅՍՆ ԱՍԱՑԵԱԼ Ի ՄՈՎՍԻՍԷ ԴՊՐԷ ԿԱՐՆԵՑԻՈՅ

*Մենացեալ այրիմ սիրով,*
*Սէրն իմ, փութով էջ ի բարձանց,*
*Զի կարի խանդակաթ եմ,*
*Լոյս, էջ ի խնկաբեր լերանց,*
*Շուշան հովտաց, ծաղիկ դաշտաց,*
*Եկ սիրելի իմ, աղաւնի իմ,*
*Գեղեցիկ, զի ձմեռն էանց:*

*Օդագնաց բարձրաթռիչ,*
*Թռչուն առաւել բարձրացեալ,*
*Եկ ի պարտէզ քո նորագուարճ,*
*Բուրումն անուշից ենթադրեալ.*

*Ձեռագիր՝*

A, *թղ.* 18*ա* *եւ* —20*ա*:

C, *թղ.* 11*բ*—12*բ* (*ուղղագրական շատ սխալ ունի, բանի մը հատ միայն նշանակեցինք*):

E, *թղ.* 47*ա*—48*ա* (*ընագիր*):

F, *թղ.* 67*բ*—68*բ*:

G, *թղ.* 96*ա*:

P, 1870 *էջ* 311:

*Մովսէս* F: 1 *սիրօվ* C:

2 *սէր իմ* A: *սէրըդ փութով* P: *փութօվ* C:

3 *խանդադատիմ* G: *խանդակաղ* C:

5 *հօվտաց* C: *ծաղիկ ընդ դաշտաց* G: *դաշտեաց* C:

6 *եկ սիրելի իմ աղաւնի. իմ գեղեցիկ* A: *աղաւնի իմ գեղեցիկ* P:

8 *բարձրայթռիչ* C:

10 *նորոյգուարճ* C:

11 *են դադարեալ* G: *ենդադրեալ* A:

Գեղով յարմարեալ, գունով զարդարեալ.
Եկ սիրելի...:

Վասն է՞ր հայիս յիս խեթիւ,
Միթէ ունիմ քան զքեզ ճարակ.
Վայելուչ այգի նորատունկ,
Գեղահաս նոր բարունակ,
Համ քաղցր, նաեւ ախորժակ.
Ե՛կ սիրելի...:

Սառնամանիքն լուծան,
Ամպք հոսեցին խուռն անձրեւաց,
Նարդոս եւ քրքում գունով,
Ծաղկունքն ամէն թփատարած,
Ի ծերպից վիմաց բղխումն աղբերաց.
Ե՛կ սիրելի...:

Եղեւ լի այգին ցօղով,

12 յարմար EFP: զարարեալ C:
14 խէթիւ A:
15 ունիմ քեզ ճարակ EP:
16 այգին EFP: նորայցատուն C:
17 պարունակ E:
18 քաղցրունակ A: քաղխցրվակ C:
21 ամպք C: բուսեցին E: խառն C:
22 գուով A:
23 ծաղկունք AC. ամեն A: թփատարած F: փթթատարած P:
24 ծերպից C:
26 Ցողով շողղաղերով, շուխ շուշանով երրնա-զարդեալ, վարդենիքըն ջան բզորդան կարմիր գոյով երգէ պարելով ցընծայ կայթելով A:
26 շուրջ շուշանով, երգնազարթեալ, վարդենիքըն զորթան կարմիր գունով... ցընծա կայթելօվ C:

Ծաղ շաղելով շիւղ շուշան,
Երփնազարդեալ վարդենիքն,
Բան գորգան կարմիր գունով.
Երգեա՛ պարելով, ցնծա՛ խայտալով.
Ե՛կ սիրելի...:

Ստորահակ թեւատարած,
Տերեւախիտ խնծոր տատա,
Ո՛վ դու ընտրեալդ ի բիւրից.
Կթեա ողկոյզ քո անարատ,
Ձեւով անբաղդատ, լեզուով անգրուատ.
Ե՛կ սիրելի...:

27 շուշանով FP:
32 ստրրահակ A: ստրահակ C:
33 տերեւախիթ A: տերեւալից F:
34 բիւրոց C:
35 կրթեայ AC: գողկուզ C:
36 լեզուօք A: դեզօվ անբաղդատ, լեզուօվ ընտ-րած C:

Տաշեան, Մայր ցուցակ էջ 986 (Թ. 514) 820. (Թ. 369), Ոսկեան, Մայր ցուցակ, Բ, էջ 530 (Թ. 944), 673 (Թ. 1042) սոյն տաղը կայ նաեւ Թ. 156 Ձեռագիր տաղարանի մէջ, բայց Հ. Տաշեանէ նկատի չէ առնուած: Հրատարակուած է «Բազմավէպ»ի մէջ, 1870 էջ 311 «Երգ առ Յիսուս» խորագրով: Թ. 156 Ձեռագրին մէջ ունի սա խեղճ խորագիրը՝ «Տաղ ողնուազոյն առ սիրեցեալն իւր, ձայնն կամի զսէրն իւր մածանել ըղսեննեակ սրտին իւրոյ կամ երբեմ խօս առ ի սուրբ կոյսն այսինքն անհամեմատնի կամ սյս առելով եկ ազաւնի իմ». առդ Թղ. 18ա արտագրուած են հինգ տուն, շարունակութիւնը կը գտնուի՝ Թղ. 20ա ի վրայ: Իսկ Թ. 1042 (G.) այս տաղէն միայն երկու տուն ունի:

Դ.

ՏԱՂ ԱՌ Մ. ԿՈՅՍՆ

*Եղեալ հարսն անմահին,*
*Երկնաւոր արքային,*
*Առաղաստ անճառին,*
*Մարիամ լուսածին:*

*Բամք զօրացըն վերին,*
*Սիրովըդ քո զմայլին,*
*Բաղձանօք կարօտին,*
*Եւ յաւէտ փափագին:*

*Գերագոյն գահ կազմեալ,*
*Տաճար սուրբ սըխրացեալ,*
*Յոր Աստուածըն բազմեալ,*
*Իսկուհի երանեալ:*

*Ի քէն սիրով հայցեմ,*
*Արտասուօք աղերսեմ,*
*Յաւագին պաղատիմ,*
*Նայել յիս աղաչեմ:*

*Մոլորեալ թափառիմ,*
*Յորսողէն տագնապիմ,*

*Ձեռագիր՝*
B, *թղ.* 66*ա*—67*բ* (*ընագիր*):
F, *թղ.* 65*ա*—66*բ*:
H. *թղ.* 31*բ*—32*ա*:
*Հրտ.* M. *էջ* 154, N. *էջ* 218:

8 *փափաքին* FHM:
18 *որոչէն* HM:

Բարեխօս զքեզ ունիմ ,
Կոյս մաքուր յաղագս իմ :

Ոսկին յոյժ չարագոյն ,
Սպառէ միշտ իմ հոգւոյն ,
Կարեվէր խոցէ զնոյն ,
Ողորմեա անկելոյն :

Վարանեալ տատանիմ ,
Գաղտնի նետիւք զինիմ ,
Աղաչեմ սրբուհի ,
Սատեցի , սուղեցի :

Սոսկալի յոր ելից ,
Ցորժամ զկեանս այս թողից ,
Աղաչեմ կոյս անբիծ ,
Փրկեա՛ զիս ի նետից :

Ի յօղոց այս չարէ ,
Խաւարին իշխանէ ,
Հոգիս իմ սարսափէ ,
Օգնական զքեզ կոչէ :

Սպառէ մեծ ատենին ,
Գալստեան Միածնին ,

21 չարաթոյն HM :
23 կարէ վերխոց HM · կարէվէր N :
24 ողոքմեայ M :
29 օր M · որ ելից H :
31 ամբիծ F :
32 ի տուից H · փրկել M :

*Աղաչեմ տիրածին,*
*Միջնորդ լեր դատողին:*

*Երևեալ լոյս փառաց,*
*Պարակից երջանկաց,*
*Միշտ օրհնել զԲանն Աստուած,*
*Անսահման պարապայց:*

41 *երևել* HM:

*Տաշեան, Մայր ցուցակ էջ* 469 (*Թ.* 160), *Ոսկեան, Մայր ցուցակ Բ. էջ* 530 (*Թ.* 944), *անդ էջ* 13 (*Թ.* 577): — *Տեսնել՝ այս տաղը նաև Կիւլէսէրեան Բ. կաթ., Ցուցակ Ձեռագրաց Ղալաթիոյ ազգային Մատենադարանի Հայոց, Պէյրութ* 1961. *էջ* 887:

# Ե·

## ՏԱՂ ԱՌ ՍՈՒՐԲ ԿՈՅՍՆ ՄԱՐԻԱՄ ՈՒՄԵՄ(Ն) ԱՐՁՈՒՐՈՒՄԵՑՈՅ

*Մարիամ կոյս երանեալ,*
*Գերահրաշ Թագիւ պըճնեալ,*
*Հոգիս ի քեզ զենեհար,*
*Զինահար, զինահար, զինահար, զինահար,*
*Ով (դու) բիւրից ընտրեալ:*

*Օրիորդայն Դաւթի,*
*Դու կոչեցար հարսն եր(կ)նի*
*Աղերս որդւոյդ մատուցի·*
*Զենեհար, զինահար . . . :*

*Վեհին մեծի մենարան,*
*Անմահ Բանին ճեմարան,*
*Ինձ քեզ ունիմ ապաստան·*
*Զենեհար, զինահար . . . :*

*Սիրոյ անմահ արքային,*
*Մայր եւ ծնող Միածնին,*
*Ապաւէն զքեզ ունիմ,*
*Զենեհար, զինահար . . . :*

*Ձեռագիր՝*

A, *«սկիզբը՝ Թղ. 25ր եւ շարունակութիւնը՝ Թղ. 19ր. «Երգեմք քեզ երգս», (ընագիր):*

3 երբեմն *զենահար եւ* երբեմն *զինահար A*:
Կը նշանակէ անձնատուութիւն, ուխտ·

Երգեմք քեզ երգս հրճուանաց,
Խընդայ տեղի բերկրանաց,
Թ՛ագ եւ պըսակ կուսանաց,
Ձենահար...։

Սիրով այրիմ տոչորիմ,
Ձմեռս յիշեմ՝ զարհուրիմ,
Հողոյս ճարակ զքեզ ունիմ,
Ձենահար...։

Ի քեզ յուսամ տիրածին,
Մարիամ Աստուածածին,
Բարեխօսեա Միածնին.
Ձենահար... ով բիւրից ընտրեալ։

Տաշեան, Մայր ցուցակ, էջ 459 (Թ. 156)։ Այս չորս տունը կայ Թ. 156 Ձեռագրին մէջ Թղ. 25ր, իսկ վերջին տուները կը գտնուին հոն, բայց առջեւը՝ Թղ. 19ր-ի վրայ. հմմտ. վերը։

## Զ.

ՆՈՐԻՆ Ի ՎԵՐԱՑ ՍՈՒՐԲ ԿՈՒՍԻՆ ՄԱՐԻԱՄՈՒ

*Մենարան լուսաճեմ, մատեր ուէրունեան,*
*Զարդարեալ առապատ լուսակերտ խորան,*
*Քեզ տեղի պատրաստեաց Յիսուս Մեսեայն,*
*Ով բնտրեալդ ի բիւրից կոյս անապական:*

*Ուրախացիր ցնծա լեառն զմռսեան,*
*Ով աշտարակ դաւթեան, կառք սողոմոնեան,*
*Ամէն ազգ եւ ազինք զմեզ կարօտանան.*
*Ով բնտրեալդ...*

*Վարդ եւ քրքում, նարդոս, զմուռն եւ շու-*
*շան,*
*Զեն նոքա համեմատ հոտոյդ աննըման,*
*Հոտն որ իքէն բուրեաց ազինք զմայլեցան:*
*Ով...*

*Արքայական տաճար,*
*Բանին խորան կազմեալ,*
*Անուշահոտ բուրվառ.*
*Անապական կոյս, մեղաւորաց յոյս:*

Ձեռագիր՝

E, Թղ. 48ա—բ (բնագիր):

5 ծընծա:

18 արդխօ"f՝ սխրալի

*Սիրալի սուրբ տատրակ,*
*Եղեր գարնան գուշակ,*
*Տեառնագրեալ տախտակ.*
*Անապական կոյս, մեղաւորաց յոյս։*

*Արմատ անմահութեան,*
*Ծառաւիղէ Դաւթի,*
*Ծընար զանմահ արքայն,*
*Անապական կոյս, մեղաւորաց յոյս։*

Տաշեան, Մայր ցուցակ էջ 986 (Թ. 514)։ Այս տաղը արտագրուած է Մովսէս Կարնեցի դպրին... «Մենացեալ այրիմ սիրով» սկզբնատառուած տաղէն յետոյ եւ գրուած «Նարին...» որով կարելի է եզրակացնել որ Մովսէս Կարնեցիի ըլլայ։ Առաջին երեք տուներու սկզբնատառերը կը կազմեն «Մով» ուստի ըսել է՝ թերի է։ Յաջորդ երեք տուներու սկզբնատառերէն կը կազմուի «Աստ»։ Միայն «Կոյս անապական» եւ «անապական կոյս» նմանութիւններն են, որոնք կրնան մատնել տալ թէ իրարու գուցէ վերաբերին — մէկ տաղի մասեր ըլլան, բայց երեք տուն պակասով։ Ոճը նկատելով՝ չափազանց կասկածելի։

## Է.

### ՏԱՂ ԱՌ ԽԻՐՈՒՄ ՊԱՂԱՏԻ ԱՌ ՍՐԲՈՒՀԻՆ

*Մեղք իմ բազմացան քան ըղհեր գըլխոյս,*
*Քեզ ունիմ ապաւէն, ով երջանիկ կոյս,*
*Զտիւ եւ զգիշեր արտօսր ցօղէ աչերոյս.*
*Մի թողուր զիս ի սպառ, ողորմեայ գերւոյս:*

*Ունայն գտայ արդեանց առաքինութեան,*
*Ոչ ունելով երկիւղ աստուածպաշտութեան,*
*Լալով ի քեզ դիմեմ, մայր ողորմութեան.*
*Մի թողուր զիս ի սպառ, ողորմեայ գերւոյս:*

*Վաճառական եկի աշխարհս շահելոյ,*
*Վատնեալ թափուր դարձայ վասն ապաղելոյ,*
*Բարեխօսեայ սուրբ կոյս, վասն իմ որդոյ քո.*
*Մի թողուր զիս ի սպառ, ողորմեայ գերւոյս:*

*Սատանիմ, սարսափիմ ահէ դեհեննոյն,*
*Թէպէտ պարչիմ մեղաց, դառնամ միշտ առ նոյն,*
*Զքեզ ունիմ միջնորդ պանծալի դշխոյն.*
*Մի թողուր զիս ի սպառ, ողորմեայ գերւոյս:*

*Ձեռագիր՝*
A, *թղ.* 22*բ*—23*ա* (*բնագիր*):

3 *ցողէ* A:
9 *աշխարս* A:
17 *արդայարան* A:

Խրանուհի լուսակերտ արքայարան,
Անմահ թագաւորին մաքուր մենարան,
Թէպէտ եմ մեղաւոր գոլով անարժան,
Մի թողուր զիս ի սպառ, ողորմեայ գերույս:

Սրտաբեկեալ շրջիմ երերուն,
Տարաբերեալ ծփիմ նման ծովերուն.
Դու ինձ լեր ձեռնատու, ով Մայր քաղցրա-
գոյն.
Մի թողուր զիս ի սպառ, ողորմեայ գերույս:

21 սրտայրեկեալ A:

Տաշեան, Մայր ցուց. էջ 459 (Թ. 156):

## Ը.

## ՈՂԲ Ի ՎԵՐԱՅ ԱԶԳԻՆ ՄԵՐՈՅ ԱՍԱՑԵԱԼ Ի ԿԱՐՆԵՑԻ ՄՈՎՍԷՍ ԴՊՐԷ

*Մթապատ մառախուղ տիրեաց մերայնոց,*
*Ոչ ժուժելով բազմաց եղին ի հաւատոց.*
*Լալով առ քեզ դիմեմ, Տէր արարածոց,*
*Այց արա տառապեալ ազգիս մեր Հայոց:*

*Օտարազգինքն ի վերայ մեր բազմացան,*
*Որպէս զկատաղի գէտ զարբեալ գազան.*
*Ով քաղցրաղոյն Յիսուս, կենաց գաւազան,*
*Այց արա տառապեալ ազգիս մեր Հայոց:*

*Վա՛յ եւ եղուկ ժամուս, որ հանդիպեցաք,*
*Ի ձեռս անօրինացն թափառեցաք.*
*Օգնեա մեզ, Տէր Յիսուս, ի սպառ կորա-*
*ցաք,*
*Այց արա տառապեալ ազգիս մեր Հայոց:*

*Սուրբ Սահակ Պարթեւ, ազնիւ հռետոր,*
*Որպէս նախասացեր եղաք աստանօր.*
*Ոչ ունելով իշխան եւ ոչ թագաւոր.*
*Այց արա տառապեալ ազգիս մեր Հայոց:*

*Ձեռագիր՝*
B, *թղ.* 181*ա* (*բնագիր*):
E, *թղ.* 117*բ*—118*ա*:

3 *եղին հաւատոց* E:
9 *յոր* E:

Եկ Տէր Լամբրոնացի, լեր մեզ ցաւակից,
Որպէս գուշակեցեր, եղաք ողբալից·
Եկեղեցիք՝ պանդոկք, իշխանք՝ դողալից·
Այց արա տառապեալ ազգիս մեր Հայոց:

Սրբուհի սիրասնունդ, լեր մեզ օժանդակ,
Փրկեա ի սուտ եղբարց, որք են այլանդակ,
Ի ծոց եկեղեցւոյ պահեա ամրափակ·
Այց արա տառապեալ ազգիս մեր Հայոց·

19 եկեղեցիկ E:

Տաշեան, Մայր ցուց. էջ 469 (թ. 160), էջ 987 (թ. 514):

Թ․

## ԵՐԳ ԱԶՆԻՒ Ի ՎԵՐԱՅ ՍՈՒՐԲ ԷՋՄԻԱԾՆԻ ԱՍԱՑԵԱԼ Ի ՄՈՎՍԻՍԷՆ

*Երջանկափայլ սրբարան,*
*Լուսազարդ մայրդ Սիօն,*
*Սուրբ Երրորդին բնակարան,*
*Լուսազարդ մայրդ Սիօն*
*Սուրբ Հաւատոյ ըշտեմարան,*
*Մեղաց մերոց քաւարան (է)*
*Գերափայլ ազնիւ Սիօն:*

*Բենաչէն յարկ տարփալի,*
*Մաքուր լուսով հրաշալի,*
*Մեր այն էիցս սիրելի,*
*Սափոր ոսկի տենչալի:*

*Գեղեցկաձեւ կազմեցար,*
*Լուսակերպ նկարեցար,*
*Անհամեմատ կերտեցար,*
*Ազնիւ լուսով փայլեցար:*

*Իմանալի տուն լուսոյ,*
*Պայծառ սենեակդ Աստուծոյ,*
*Կուսական քո սուրբ գԹոյ՝*
*Արա արժանի լուսալոյ:*

*Ձեռագիր՝*

D, *Թղ.* 12*բ*—14*բ* (*բնագիր*):

2 Այս տողը իւրաքանչիւր կամ յաջորդ տողէ վերջ ամբողջութեամբ կրկնելի է:

19 Կարծեմ պիտի ըլլայ՝ *յուսալոյ*:

Մեծապայծառ լուսարան,
Անհասն Բանին ճեմարան,
Անուշ խնկոց բուրարան,
Կրկից ախտից մաքրարան:

Ով սուրբ խորան լուսալի,
Յաւէտ պտղօք պերճալի,
Ազնուաշուք նազելի,
Գունազեղիւք ցանկալի:

Վարդագոյն գեղեցկացար,
Կարմիր գունով պճնեցար,
Սիրալի երեւեցար,
Սրտի իմոյ սէր ցուցար:

Սիրոյդ սրբոյ սարսուցայ,
Ախտի սիրոյ մատնեցայ
Կարի վիրօք խոցեցայ,
Ի քեզ հպմամբ բուժեցայ:

Իմաստուն գերասուրբ,
Անարատ ամենասուրբ,
Արփիափայլ մշտասուրբ,
Դրախտ փայլուն յարասուրբ:

Սոսկալի գերամբիծ,
Փեսայդ քո սուրբ յար անբիծ,
Անախտ սիրով միանցիք (°),
Մանկունքս ձեօք հրճուեցուք·
Է գերափայլ ազնիւ Սիոն:

Խական լուսոյն կրող,
Անմահ Բանին յար կրող,
Զմեզ նեղութեանց փրկող,
Անճառ լուսոյն հրաւիրող,
Է գերափայլ ազնիւ Սիոն։

Խորագրէն յետոյ կայ՝ «Թվին ՌՄԺԲին Ապրիլ մէկին գրեցաւ ձեռամբ անարժան եւ անպիտան եւ յետնեալ ծառայ Աստուծոյ Պետրոսէ» (Հմմտ. Տաղը՝ Տաշեան, Մայր ցուցակ էջ 862, Թ. 412)։ Այս տաղը շատ նմանութիւն ունի Ղազար Կաթողիկոսի Էջմիածնի մասին գրած այն տաղին հետ, որուն սկիզբն է. «Էջմիածին զարդ փառաց, լոյս է, լոյս է, մայրդ լուսոյ» (Տաշեան, Մայր ցուցակ էջ 862)։

ժ·

## ՏԱՂ ԱԶՆԻԻ (բառ մը անընթեռնլի) ՂԱՐԻՊՈՒԹԵԱՆ

*Մեկնեցայ հայրենեացն իմ աստ մնալով,*
*Յօտար երկիր թափառելով, մաշելով,*
*Պանդուխտ եւ անցաւոր վշտակիր մարմնով,*
*Ի ընտանեաց եղբարց կարօտ մնալով:*

*Օտար աշխարհ թափառ, չունիմ դադարում,*
*Տարաբերեալ ծփիմ նման ծովերուն,*
*Ահ եւ կասկած եւ միշտք անթիւ անպատում,*
*Զանձրանալով ի սպառ մնացի կարօտով:*

*Վիշտս ի աւազակաց, վիշտս ի սուտ*
*եղբարց,*
*Վիշտս ի հրապուրանաց անօրէն ազանց,*

*Ձեռագիր եւ տպագրութիւն՝*

A, *թղ.* 23*բ*—24*բ* (*ընագիր*):
P, 1858 *էջ* 135:

1 *հայրենաց իմ* A:
2 *օտար աշխարհ* P:
3 *պանդուխտ եւ նժդեհ* P:
4 *ի յընտանեաց* P:
5 *աշխարք* A: *թափուր* A:
6 *տարայբերեալ* A:
7 *կասկածք* P:
8 *ի յընտանեաց եղբարց կարօտ մնալով* P: *կարօտով* A:
11 *արհավիրք* A:

Արհաւիրք ահարկուք գետ ջուրց հոսանաց,
Պաշարելով անձն իմ, մնացի կարօտով:

Սոսրապղլուխ կարկամեալ կամ երկիւղալից,
Խանդարեցի յուսումն ի դէմս ամենից,
Թէպէտ կամ ենթադրեալ յերկիր բարելից,
Բայց ոչ ունիմ հանդիստ, մնացի կարօտով:

Երբեմն դեգերիմ ի այս կենցաղում,
Պահ մի ուրախանամ, հազար պահ
    տրրտում,
Ցայգ եւ ցերեկ տապնայ, ահ եւ հառաչում,
Ապաղելով ի հողս մնացի կարօտով:

Սրբուհի Կոյս, օգնեա ինձ տառապելոյս,
Կսկծագին աղերսելոյս, ցաւելոյս,
Բարեխօսեա առ Տէր ողորմիլ դերոյս,
Հանելով ի բանտէս, մնացի կարօտով:

12 կարոտով A:
13 երկիւղալ լից A:
14 յուսումն P:
15 են դադրեալ A:
16 կարոտով A:
17 ի յայս P:
19 ցայք··· տաքնայ A: արեւ հառաչումն P:
20 կարոտով A:
21 օգնեայ A:
24 կըսկըծայ գին աղբեսելոյ A: տառապելոյս P:
25 բարեխօսեայ A: դերուս P:
26 ի բանդէ P: կարոտով A:

*Ինձ ողորմեա Յիսուս, Բանըդ հայրական,*
*Ապաւինիմ ի քեզ, կենաց գաւազան,*
*Թէպէտ եմ մեղաւոր գոլով անարժան,*
*Մի թողուր զիս ի սպառ, մնացի կարօտով:*

27 *ողորմեայ* A:
28 *կարոտով* A:

*Տաշեան, Մայր ցուցակ, էջ* 459 (*Թ.* 156), *Բազմավէպ* 1858, *էջ* 135, *ուր խորագրուած է «Ազգային պանդխտի մը երգ»· այսքան:*

## ԺԱ.

### ՏԱՂ ԱՌ ՍԷՐՆ ԻԻՐ Ի ՑԴՋԱԿՆ ԿԱՄ Ի ՄՌՒԾԱՆԵԼ

*Մեղմիկ հարաւային հողմոյն,*
*Հնչեաց եւ եղեւ նոր գարուն,*
*Ե՛կ սիրելի իմ քաղցրագոյն,*
*Ե՛կ նիստ առընթեր վարդենոյն:*

*Ուլք երկարեակ որդւոց եղանց,*
*Իջին յանտառախիտ լերանց,*
*Աչերն յանեղէն ծարուրած,*
*Փառք ներակերտող Բարձրելոյն:*

*Վիթք յանապատէ դիմեալ գան,*
*Յարօտ շուշանիւ շատանան,*
*Ամէնն երկարեակ Փարտ ոչ կան,*
*Ըստեղծօղն յօրինէր գոյնզգոյն:*

*Ձեռագիր եւ տպագրութիւն՝*
A, *թղ.* 21*բ*—22*ա* (*ընագիր*):
P, 1849 *էջ* 287:

1 *հարաֆային* A:
5 *երկուորիք* P:
6 *յանտառայխիտ* A:
7 *անեղէն* A:
8 *նակերտող* A:
9 *վիտք յանապատ* A:
10 *արօտ* A:
11 *զամէնն* A: *Երկուորիք* P:
12 *զուգագոյն* P: *օրինել գոյնզգոյն* A:

*Սէր իմ սիրով եկ ի այգին,*
*Ահա ծաղկեցաւ նռնենին,*
*Թռչունն նստեր վերայ վարդին,*
*Ձայնէ առ իւր սիրեցելոյն:*

*Երամս երամոց հետեւին,*
*Թռչունքն ամենայն դետեղին,*
*Երգեն փառս տան ստեղծողին,*
*Նուագս ներբողից գոյնզգոյն:*

*Սալամքն իջին ի լեռներուն,*
*Կարկաչեն ի մէջ Թրփերուն,*
*Ունկն դիր ձայնից ձագերուն,*
*Ոմն թաւ, ոմն նրրբադոյն:*

13 *ի այգին* A. *ի յայգին* P:
14 *ծաղկեցաւ* A:
18 *թռչուն* P:
20 *նվագս* A:
21 *սալամք* P: *լեռներուն* P:
22 *կարկնչեն* P. *մէջ* P:
23 *ձայնից* չունի P:

*Տաճեան, Մայր ցուցակ էջ* 459 (*Թ.* 156: *Բաղ-մովէզ* 1849, *էջ* 287, *լոկ հրատարակութիւն առանց որեւիցէ տեղեկութեան: Խորագրուած՝* «*Տաղ բղձական*»:

## ԺԲ.

### ՏԱՂ ԱՌ ԸՂՁԱԼԻՆ ԻՒՐ ՁԱՅՆ ԱՍԵԼՈՎ

*Ե՛կ իմ սիրուն սիրելագոյն,*
*Ձգեցի՛ր բեհեզ ծիրանագոյն,*
*Ե՛կ ազատնի փետրօք զարդուն,*
*Ե՛կ իմ տատրակ քաղցըր խօսուն։*

*Բամբեալ ծաղկանց ազգ ժողովքին,*
*Գունով գեղով համազարդին,*
*Սուսն տերեւով փթրթեալ պճնին,*
*Բայց ոչ ունին հոտ քո վարդոյն։*

*Գերազանցեալ գոհար վարդին,*
*Կայծ կարկեհան շափիւղային,*
*Բոլոր պատկեր գետ ըղլուսին,*
*Ձկայ քեզ նման գեղեցկագոյն։*

*Մարգարիտ անգին աննըման,*
*Լուսոյ ճաճանչ բիւրեղանման,*

*Ձեռագիր եւ տպագրութիւն՝*
A, *թղ.* 20*ա*—21*ա*։
K, *Բ. պրակ էջ* 29—30։
P, 1875 *էջ* 106 (*բնագիր*)։

1 *Ե՛կ իմ սիրելագոյն սիրուն* A։
3 *փետօք* A։
8 *վարդին* A։
10 *շափրիւղային* A։
12 *գէտ ըղլուսին* A։
14 *բիւրղանման* A։

Դու ճառագայթ արեգական ,
Այսօր ցոլացեալ եղեր յամպոյն :

Ոսկեհապատ քօղով պճներ ,
Լանջօք քո արկ շղղաշատեա ,
Այտ քո գունով քան զլար կարմիր ,
Ձեւով ազնիւ վայելչագոյն :

Վարսիւք դեղձան ծամակալով ,
Ցեռեալ յականց թափ մարգարտով ,
Ոսկի գրնտիւք բազկանոցով ,
Պրճղընաւորն յարմարագոյն :

Սիրամարգ իմ ոսկի փետրով ,
Եւ ի հովիտս առ չուչանով ,
Կայթեաց ի պարս ճեմելով ,
Ահա հրնչեաց հողմ մեղմագոյն :

Եկըն հարաւ , հրնչեաց այգին ,
Ոստս արձակեաց նոճ նըշենին ,

16 փայլատակեալ եղեր A :
17 քով պրճներ A :
18 լանջովք քո արկ չխաշատիա A :
19 Այդ քո K :
20 վայելչայգոյն A :
21 վարսիւք կադմեալ ծամայկալով A :
22 թաք մարգարտով A :
24 պրճըղնաւոր A :
26 յելի A :
27 կայթեայ A :
28 հողմն A :
29 հարաֆ A :
30 ոստ K :

*Ահա բուրեաց հոտ Նարդոսին,*
*Ծաղկունքն ամեն պայծառագոյն:*

*Սիրով խայտայ ի պարտիզին,*
*Խանց երկիւղն ձմեռնային,*
*Ժամ է որ գայ տատրակն յայգին,*
*Նուագելով երգ քաղցրագոյն:*

*Ինձ տեսութեան առնել արժան,*
*Սակաւ երգոյս լինել հաւան,*
*Ընկալ գովեստ ներբողական,*
*Ի Մովսիսէ նուաստագոյն:*

32 *ամէն* AK:
34 *երկիւղ* A:
35 *այգին* A:
36 *նըվագելով* A:
37 *տեսութեանց* A:
38 *լինիլ* A:
40 *նըվաստագոյն* A: *նուաստագոյն* եւ վերը 36 *նուագելով* K:

*Տաշեան, Մայր ցուցակ, էջ* 459: *Կոստանեան Կ. Նոր ժողովածու, Բ. պրակ, Միջնադարեան Հայոց տաղեր, Թիփլիս* 1892, *էջ* 29: *Բազմավէպ* 1875, *էջ* 106, *ուր տաղը հրատարակուած՝ առանց որեւէ դրութեան: Այս տաղին Մովսէս Կարնեցւոյն ըլլալուն ապացոյց դուցէ ըլլայ միայն այն որ Թ.* 156 (A) *Ձեռագրին մէջ Մ. Կարնեցիի տաղերու շարքին մէջ կը գտնուի:*

## ԺԳ.

### ՏԱՂ ԱԶՆԻՒ ԳՈՒՆ, ԵԹԷ ԳԻՏԻՑԵՍ, ԻԲՐԵՒ ՊԱՍՏԷ

*Մի՛ վհատիր անձ իմ, լեր միշտ այխոյան*
*Մի՛ զարհուրիր հոգի իմ յուսայ տէր արդայն*
*Զի պահեսցէ ըղքեզ չարէն անխափան.*
*Համբիրամ, համբիրամ, համբիրամ կենօք*
*անտատան :*

*Ուրախացիր սիրտ իմ, զի կաս վարանեալ,*
*Նուաբեկեալ, ալեկոծեալ, մըրըրկեալ,*
*Կալ քեզ միշտ բարեխօս կոյսն ամէնօրհնեալ,*
*Համբիրամ . . . :*

*Վասն է՞ր տապիս եւ տառապիս, վասն է՞ր*
*լաս.*
*Խանդաղատեալ դառն աղէտիւ զիա՞րդ լաս.*
*Խնդրեայ ի Տեառնէ, լիցի քեզ նըպաստ.*
*Համբիրամ . . . :*

*Սիրտ իմ առ քեզ աղաղակէ ողբալով,*
*Պաղատելով, աղերսելով, փարելով,*
*Նայեցայ առ քո Տէր իմ Յիսուս խնայելով*
*Համբիրամ . . . :*

*Էգ անսկիզբն, աներր, անհուն, անպարփակ,*
*Ամենազօր Տէր իմ, լեր ինձ (յ)օժանդակ,*
(Տող մը կը պակսի) :
*Համբիրամ . . . :*

Սէր իմ Յիսուս, սիրեցելոյդ ողորմեայ,
Ողորմեայ... (անընթեռնլի) ույդ արժանի
 արայ
Հաստեայ, տածեայ, կառավարեայ,
 կազդուրեայ,
Համբրամ...:

Ձեռագիր՝

A, թղ. 19ա եւ շարունակութիւնը թղ. 26ա (բնագիրն իր ուղղագրութեամբ):

Տաշեան, Մայր ցուցակ էջ 459: Այս տաղն ալ իջահամարներու խառնաշփոթութիւն ունի, հմմտ. վերը):

Լոկ Մովսէս եւ Մովսէս Արգարումեցւոյ անուններու տակ կը գտնուին հետեւեալ տաղերն, որոնց հրատարակութիւնը չենք ըներ, զի մասամ մը օտար լեզուով են եւ կամ զի խեղճ բաներ են: Անոնք արտագրուած են Թ. 156 Տաղարանին մէջ: Ուղղագրութիւնը պահուած:

1. Թղ. 24ր. Տաղ այնիւ եղանակաւ արապի:

Մայլեցայ սիրով Նազելի,
Քեզ տեսանել ցանկամ հոգի,
Դու բուրաստան ծաղկեալ այգի,
Հոտ քո բուրեաց զէտ Նարգոսի:

(Մէկ տուն հայերէն եւ մէկ տուն տաճկերէն. սկզբնատողք՝ Մովսէս):

2․ Թղ․ 27բ․ Տաղ առ կոյսն Մարիամ։ Տաճկերէն իբրեւ պէստէ։ Նաղմէ մուհէմիր․ եկ թէ գիտես մուղամ։

Մահ դէրտէ օքունուն, պէյթ հուսնունու․․․

(Տուներու սկզբնատառերը․ Մոսէս)։

3․ Թղ․ 29ա․ Տաղ այնիւ գունով իբրեւ պէստէ մուղամ բաստա։

Մի նիրհեր անձն իմ, լեր արթուն․
Նէ տըր պու տէրտու Նիշանըն
Մի ապաղեր, գիտըդ կաս քուն․
Արա պուլ տէրտայ տէրմանըն։

(Այսպէս տող մը հայերէն եւ տող մը թրքերէն․ սկզբնատողերու առաջին տառեր՝ «Մովսէս»)։

4․ Թղ․ 30ա․ Տաղ առ կոյսն Մարիամ Մովսէսի ասացեալ Արղուրամեցոյ․

Մարիամ կոյս չքնաղաղեղ աննրման․
Մահճէպինըն բախաշըն սոզուն հէյաթ
չիրին գիպան։

5․ Թղ․ 31ա․ Տաղ այնիւ մաղամ․․․

Մարդարտաշար հիւսեմք յարմար,
Գունազմի չուխիճի հանըմ,
Քեզ վայելէ գովեստ յարմար։

(Տող մը հայերէն եւ տող մը տաճկերէն․ Տուներու սկզբի տառերէն կը կազմուի «Մովսէս»)։ Վերջին տան մէջ՝ «Մովսէս դպիրս ինթի զարէմ, այլէ էյ չիրին գիպանըմ»։

6. (*խորագիրը չկայ*)։

*Մարախուղ կուտակօրէն մերժիր յինէն մի*
*մօտիր յիս,*
*Շատ է ինձ նեղահարիս որ խոցոտիմ միշտ*
*ի աղդէս.*
*Ոչ ունելով բաղեպանի* (sic) *առնելոյ ըղդեղ*
*ցաւոյս.*

*Ո՜հ ո՜հ ո՜հ ո՜հ աւաղ անցեալ օրերոյս,*
*Որ կորուսի այս կենցաղոյս։*

*Ոչ յիշեցի գահաւոր անաչառ դատաստանն*
*ահեղ,*
*Եթէ ոչ լեալ էի հրմուտ պատուիրանացն,*
*ոչ էր մեղ,*
*Յապաղելով հող աշխարհիս ոչ արար*
*ցաւոյս դեղ*
*Ոհ...*

(*Տուներու առաջին բառերէն կը կազմուի «Մով-սէս»*)։

7. *Թղ.* 34*բ.* «*Մախամ սապայ, որ է երկրորդ իրր առ ըղձալին իւր ձայնէ, որ է չնարհ Հոգւոյն սրբոյ*։

*Մանրայճեմ նազերով անցիր*
*Ծիրանազեղ (ո)տիւք նազելի,*
*Սէր իմ դու միով ակամբ նայելով*
*Ափշեցուցեր զիս (Աստուծոյ՝) հոգի*»։

(*Տուներու առաջին բառերու առաջին տառերէն կը կազմուի «Մովսէս»*)։

Տ· Թղ· 35ա· «Մաղամգալ, որ է վառ ձայն:

Մատուռ լուսաձեմ, ով արփիադեմ,
Գեղեցիկ իմ աղաւնի, ճշմարիտ եղեմ:
(Այոքան) :

(Տաշեան, Մայր ցուցակ, էջ 459 (Ձեռ. Թ. 156) :

Մովսէս անուան տակ մեզի հասած եւ Մովսէս Կարնեցւոյ վերաբերեալ տաղերը, որոնցմէ մաս մը հրատարակուեցաւ հոս եւ մաս մը եւս լոկ յիշուեցաւ, չեն ներկայանար բացառիկ բովանդակութեամբ եւ գրաւիչ ոճով: Միջակ եւ սովորական բաներ են: Ծառ ցանցառ կայծ ու լոյս կու տան: Սակայն մասունքներ են մեր գրականութեան եւ աւելորդ չէ անոնցմով եւս հետաքրքրուիլ:

# ԿԱՐԳ ԵՒ ԹԻՒ
# ԹԱԳԱՒՈՐԱՑՆ ՀԱՅՈՑ
# Ի ՄԱՐՏԻՐՈՍ Վ.Է ՂՐԻՄԵՑԻՈՅ

Մարտիրոս Ղրիմեցի կամ Կաֆա(յե)ցի կամ Թաթար հեղինակն է նաեւ չափածոյ ժամանակագրութեան մը, որուն խորագիրն է «Կարգ եւ թիւ թագաւորացն Հայոց», զոր այժմ կը հրատարակեմ:

Մարտիրոս անծանօթ եւ աննշան դէմք չէ: Ծնած է Կաֆա եւ այն՝ համաձայն Հ. Պոտուրեանի (Նաւասարդ 1923, էջ 72) 1605ի առենները, իսկ Ա. Մարտիրոսեանի համեմատ «Ծնունդն ընկնում է 1620ական թուականներին»[1] (Մարտիրոս Ղրիմեցի, ու–

---

[1] Ա. Մարտիրոսեան Մ. Ղրիմեցիի ծննդեան «1620ական թուականների» իբրեւ ապացոյց կը բերէ Խաչատուր Կաֆայեցիի հետեւեալ տողերը.

«Սա էր Հոնաց յաշխարհի,
Ի դրանէ Ս. Նշանի,
Պարծանք է Խրիմի,
Եւ վարդապետն Կաֆացի:
Տղայ գոլով մանուկ բարի,
Արժան լինի խորին ծերի» (հմմտ. Յակոբեան Վ., Մանր ժամանակագրութիւններ, Երեւան 1951, Ա. հտր. էջ 228): Եւ կը շարունակէ «Տարեգրութեան մէջ այդ յիշատակութիւնն ընկնում է 1657 թուականին, ուրեմն այդ ժամանակ Մարտիրոս դեռ երիտասարդ էր (Տղայ գոլով մանուկ բարի), բայց եթէ ընդունենք որ նա ծնուել է 1605 թուականին, կը

սումնասիրութիւն եւ բնագրեր, Երեւան 1958, էջ 9)։ Որդին է Գրիգորի եւ Խաթունի եւ աշակերտ Ստեփանոս Թօխաթեցիի եւ Աստուածատուր Տարօնեցի Պատրիարքի, որուն կ՚օգնէ։ Արդիւնաւոր գործունէութեամբ – Երուսաղէմի մէջ – իր վերելքի ճամբան կը բանայ։ Արդէն 1659ին Կ. Պոլսոյ Պատրիարք կ՚ընտրուի։ Կը ջանայ պատրիարքարանի պարտքերը գոնէ նուազեցնել եւ Ղալաթիայի մեծ հրդեհին աղէտեալներու օգնութեան ձեռք կարկառել։ Բայց 1660 Նոյեմբերին գահէն կը գրկուի։ Քանի մը տարի վերջ Յակոբ Ջուղայեցի կաթողիկոսէն եպիսկոպոս կը ձեռնադրուի եւ կ՚առաքուի առաջնորդ Ղրիմի, ուր արդէն կանխաւ եւս եղած էր.– ժամանակ մը գտնուած է նմանապէս Բուլղարիա — (Բազմավէպ 1929, էջ

---

լինէր 52 տարեկան, իսկ 52 տարեկան մարդը չի կարող երիտասարդ համարուել» (Մարտ. Ղրիմեցի, էջ 9)։ Սակայն «Տղայ գոլով մանուկ բարի»ն ինչպէ՞ս յարաբերութեան մէջ դնել յաջորդ տողին հետ. «Արժան լինի խորին ծերի»։ Միթէ ըսե՞լ կ՚ուզուի թէ Մարտիրոս ըստ Ս. Գրքի բարի եւ հնազանդ զաւակ ըլլալով՝ երկարակեաց եղաւ եւ խորին ծերութեան հասաւ։ Եթէ այս ճիշդ է՝ այն ատեն 1620 Թուականներուն ծնած տղայ մը, որ կ՚ապրի մինչեւ 1683 (այդ՝ Մարտիրոսի մահուան տարին է) 63ամեայ ծեր մը կ՚ըլլայ, մինչ 1605ի ժամանակները աշխարհիս լոյս տեսնող մանուկը 78ամեայ խորին ծերութեան հասած։

Ծանօթ է որ վերյիշեալ տողերու հեղինակը – Խաչատուր – ծնած է Մարտիրոս Ղրիմեցիէն յառաջ եւ իր Տարեգրութիւնը կը վերջանայ 1656ին, սակայն

283, 1930, էջ 18)։ Կը մխրճուի Եղիազար Այնթապցիի եւ Յակոբ Ջուղայեցիի կաթողիկոսական Աթոռի պայքարին մէջ, ի նպաստ վերջինին, որուն մահով առաջինն Էջմիածնի հայրապետական գահը կը բարձրանայ։ Իսկ Երուսաղէմի պատրիարք կ'ըլլայ Մարտիրոս Ղրիմեցի, որ Յոյներու հետ ունեցած վէճի մը կարգադրութեան համար՝ Կ. Պոլիս – Ադրիանուպոլիս կը մեկնի եւ վերադարձին՝ Եգիպտոսի մէջ 1683 Օգոստոս 25ին կը կնքէ իր փոթորկալից կեանքը։

«Զնայած իր բազմազբաղ կեանքին եւ տենդոտ գործունէութեանը, որ նրանից խլել է այնքան ժամանակ, Ղրիմեցին առիթ չի թողել զբաղելու գրական եւ մատենագրական աշխատանքով։ Նա բեղմնաւոր է

---

դեռ մինչեւ 1657–8 կը շարունակուի եւ անիկա կը մեռնի 1658ին (հմմտ. Ա. Աբրահամեանի յօդուածը, Էջմիածին, ամսագիր, 1944, Ա. էջ 39 – 51 եւ Վ. Յակոբեանի Նախաբանը, Մանր ժամանակագրութիւններ, Ա. էջ 205 – 29)։ Կը ստիպուինք խորհիլ՝ այդ տողը (կամ զոյգ տողերը) կա՛մ յետսամուտ է եւ ուրիշ շարունակողէ աւելցուած, որով (կամ որոնցմով) կանուխ ծնունդ եւ խոր ծերութիւն կրնան հաստատուիլ եւ կա՛մ տարբեր իմաստով – ծանրախորհուրդ, լուրջ պէտք է առնել – եթէ ծերութեան հարցը կը մերժուի։

Մարտիրոսեանի միւս ապացոյցները՝ (Մ. Ղրիմեցիին) ուշ ատեն ծնանելու մասին – այս է՝ վարդապետութեան եւ եպիսկոպոսութեան՝ հասուն հասակի են պահանջքները – կրնան ինչպէս «1620ական թուականներին», նմանապէս 1605ի ժամանակները ծնած անձի մը մերձեցուիլ։

*թէ՛ իբրեւ գրիչ, թէ՛ իբրեւ ստեղծագործող»* (Մարտիրոսեան Ա., անդ էջ 23)։

*Անոր գրութիւններէն[2] հոս նկատի կ'առնեմ միայն «Կարգ եւ թիւ Թագաւորացն (ազգիս) Հայոց» տտանաւոր ժամանակագրութիւնը կամ Պատմութիւնը։ Իր այս գրութիւնը յօրինած է* 1672 *թուականին, ինչպէս անոր վերջաւորութեանը կը յայտնուի.*

*«Ցինէն ընծայ այս քեզ, եղբայր,*
*Մերոց նախնեացըս վէպ եւ ճառ,*
*Մարտիրոսէս յոգն(ա)թշուառ...*
*Տրջարերեալ թիւս է ՌՃՌԱՒ»*
(*Ռ, Ի, Ռ, Ա, Ւ* 1121 + 551 = 1672)։

*Թէ ի՞նչ առիթով եւ ի՞նչ պարագաներու տակ զայն գրած է, չենք գիտեր։ Իր այս չափածոյ պատմութեան աղբիւրներէն Հայկազեան իշխանութեան եւ Արշակունեաց թագաւորութեան համար կը յիշէ Մովսէս Խորենացին եւ Պօղիկրատէս, իսկ թէ յաջորդ դարերու կառավարիչներու եւ թագաւորներու անուններն ու անոնց գործե–*

[2] *Գրութիւնները տեսնել՝ Պոտուրեան Հ. Մ., Մարտիրոս Ղրիմեցի, Պուքրէշ* 1924–30. *Մարտիրոսեան Ա. Ա., Մարտիրոս Ղրիմեցի, ուսումնասիրութիւն եւ բնագրեր, Երեւան* 1958. *Նաւասարդ* 1923, *էջ* 72, *Վէմ* 1934, *է, էջ* 47, *Ը.* 60, *Բազմավէպ* 1929, *էջ* 283 *եւ* 1930, *էջ* 114 *եւ* 264, 1960 *էջ* 651, *Ազգաբար* 1929 *Թ.* 911–2, *Սիոն* 1930, *էջ* 350, 384, 1932, *էջ* 21, 252 *եւն, եւն*)։

*րը ո՞ր հեղինակներէ քաղած է, կը լռէ։ Բնական է որ անոնց ժամանակակից պատմագիրներէն ոմանցմէ օգտուած ըլլայ։ Որքան կը նկատեմ իր առջեւն ունեցած է Ներսէս Պալիենցի «Իշխանութիւնք եւ Թագաւորութիւնք Հայոցգրութիւնը», զոր Վ. Ցակոբեան 1956ին (Երեւան) լոյս ընծայած է «Մանր ժամանակագրութիւններ ԺԳ—ԺԸ դարեր» հաւաքածոյին Բ. հատորին մէջ (էջ* 196–206)։ *Ահա համեմատական նմոյշ մը. սակայն կանխաւ ըսեմ եւ այդ՝ հասկնալի է չափածոյ գրութեան մը համար որ Մ. Ղրիմեցի տարբերութիւնները զանց առած կը թուի*[3]*. տես վարը։*

Մ. Ղրիմեցի (հմմտ. վարը)։

*«Վարդըն Պարոն նըստի նախկին։*
*Պարոն* Մարկոս[4] *զկնի նորին,*
*Պարոն Արշամն յաջորդ նմին։*
*Պարոն Վահանն քաջն եւ արին,*
*Որ էր սա հայր Վարդ պատրկին։*
*Վարդն պատրիկ դաւող Ցունին,*
*Պարոն Դաւիթն յաջդէ նորին։*
*Թէոդորոս ոմն յետ Դաւթին,*

[3] *Երկուքին միջեւ կան բաւական տարբերութիւններ անուններու եւ պատմական դէմքերու (Պալիենց՝ Վարազդատ չի յիշեր եւ Վաղարշ ու Վաղարշակ կը դնէ փոխանակ Արշակի եւ Վաղարշակի եւն, եւն)։*

[4] *Այս է՝ Մանդնոս (հմմտ. Աճառեան Հ. Հայոց անձանունների բառարան, Գ. հտր. էջ* 198)։

*Եւ Համազասպ որ ի կարգին։*
*Գարոն Մէժէժըն յետ նորին,*
*Գարոն Ներսէհն յաջորդ գահին։*
*Գարոն Աշոտն Բագրատունին,*
*Գարոն Սըմբատ զարմէ նորին։*
*Անտիրանան դարձեալ կըրկին,*
*Ցիսուն եւ չորս ամ վերստին։*
*Կոխան ազգաց բազմաց լինին,*
*Հագարացւոց, Գարսից 'ւ Ցունին։*
*Ցետ այսորիկ դարձ վերստին,*
*Թագաւորաց մերոց լինին»։*

Ն. Պալիենց (Մանր ժմգր. Բ. էջ 204)։

*«Գարոն Վարդ մարզպանն ամս ԺԷ,*
*Գարոն Մանկոս[4] ամս ԺԸ,*
*Գարոն Արշամ ամս Ե,*
*Գարոն Վահան ամս ԻԸ,*
*Գարոն Վարդ ամս Գ,*
*Ցետ սորայ անիշխան ամս Դ։*
*Գարոն Դաւիթ ամս Լ։*
*Գարոն Թէօդոս ամս ԻԵ։*
*Գարոն Համազասպ ամս Է։*
*Գարոն Մէժէժ ամս ԻԹ։*
*Գարոն Ներսէհ ամս Բ։*
*Գարոն Աշոտ ամս Գ։*
*Գարոն Սմպատ ամս ԻԱ։*
*Զկնի սորայ անիշխան ամս ԾԴ։*
*Դարձեալ Թագաւորք»։*

*Անանուն ժամանակագիր մը, որ յօրինած է «Կարգ Թագաւորաց ազգիս Հայոց եւ*

Պարսից թէ ուստի՞ սերեալ թագաւորեցին»․ մարզպաններու եւ ոստիկաններու շրջանն այսպէս կը ներկայացնէ․

«Վարդան մարզպան ամս ԺԷ,
Վահան ամս ԻԱ,
Մեժեժ Գնունի իշխան ամս ԼԴ, . . . :

Ի թուականին Հայոց ԾԸ Դաւիթ Սահառունի իշխան ամս Լ:

Թուին ՁԸ Թէոդորոս Ռշտունի իշխան, ամս ԻԵ եւ այլք Լ ամեն:

Թուին ՃԺԳ Համազասպ, ամս Է:

Թուին ՃԻ Գրիգոր Մամիկոնեան, ամս Ժ:

Թուին ՃԼ Ներսեհ Շիրակացի, ամս Գ:

Թուին ՃԼԳ Աշոտ առաջին, ամս Գ:

Թուին ՃԼԶ Ներսեհ Կամսարական, ամս Գ:

Թուին ՃԼԹ Սմբատ առաջին, Բագրատունի Բիւրատեան, ամս Ի:

Թուին ՃԿ այսմ ժամանակի այրեցին ի Նախջեւան զիշխանսն Հայոց եւ մնացին անիշխան ամս ԾԱ:

Թուին ՄԺԲ երկրորդ Բագրատունի, ամս ԺԹ:

Թուին ՄԼԱ Լեւոն առաջին, որ է որդի(՞), ամս Ե:

Թուին ՄԾԱ Աշոտ երրորդ, որ է որդի Սմպատայ Մսակերի, ամս Ի:

Թուին ՄՀԳ Սմբատ երկրորդ, որ է որդի Աշոտոյ, որ Ասլըապան կոչեցաւ ամս ԼԲ»:

Անանունի ժամանակագրութիւնն ալ Վ. Յակոբեան հրատարակած է վերցիշեալ «Մանր ժամանակագրութիւններ ԺԳ—ԺԸ դարեր» հաւաքածոյին Ա. հատորին մէջ (Երեւան 1951, էջ 252–58· յառաջբերուած կտորը անդ էջ 255)։ Ուր կը նշէ թէ թէեւ ժամանակագրութիւնը կը վերջանայ 1337ին, սակայն գրուած է 1679ին։ Ուրեմն հեղինակը ժամանակակից է Մարտիրոս Ղրիմեցիին, որ իր գրութիւնը 1672ին աւարտած է, ուստի Անանունը կրնար ծանօթ ըլլալ Մարտիրոսի եւ Ներսէսի համանման երկերուն։

Անանունի այս հեղինակութեան «Ընդօրինակութիւնը կատարուել է նրա կազմուելուց հինգ տարի յետոյ 1684 թուին, Եփրեմ վարդապետի ձեռքով», «Սակայն չենք կարող ենթադրել, կը գրէ Յակոբեան (անդ էջ 252 – 3), թէ հէնց Եփրեմ վարդապետն էլ եղել է առաջարկուող ժամանակագրութեան հեղինակը»։ Մարտիրոս Ղրիմեցիի տաղաչափեալ ժամանակագրութեան յաւելուածին մէջ (հմմտ. վարը) կայ՝

Տեսեալ հիքոյս որ թշուառիկ,
Գաղափարեալ տենչիւ սաստիկ,
Ստանալ յանձին զայս զանձս առատ,
Եփրեմ չնչինս, որ ապիրատ,
Արեղայէս կալ(ար)ուք խըրատ։

Մի՞թէ նախորդին եւ ասոր մէջ յիշուած Եփրեմը կարելի չէ՞ միեւնոյն անձը համա–

րիլ: «Այդ Եփրեմը ամենայն հաւանականութեամբ Մարտիրոսի աշակերտն է: Ժամանակակից լինելը նկատուում է նրա խօսքից՝ Մարտիրոս պետն երջանիկ: Եփրեմ ընդօրինակել է նաեւ մեր Մատենադարանի Թ. 1495 եւ պատուիրել 7717 Ձեռագրերը» (Մարտիրոսեան Ա., Մարտիրոս Ղրիմեցի... էջ 44, ծն. 1): Յիշուած Թ. 1495 Ձեռագրին մէջ կը գտնուի վերոյգրեալ ժամանակագրութիւնը:

Իսկ եթէ խորհուի թէ Եփրեմ վարդապետն ու Եփրեմ աբեղան տարբեր անձեր ըլլան եւ վերջինն աւելի ուշ ժամանակ ապրած, այն ատեն կը միտիմ վերջինը համարել ապագայ Եփրեմ Աջ(ա)պահեան Կաթողիկոսը (1771 – 84), որուն յաջորդն է Յաւելուածին վերջընթեր տողին մէջ յիշուած Կիրակոս Կաթողիկոսը (1797 – 1823. երկուքն ալ բազմած Կիլիկիոյ հայրապետական գահին վրայ):

Թէ ո՞ր քաղաքին մէջ եւ նաեւ որո՞ւն խնդրանքով Մարտիրոսի ժամանակագրութիւնը յօրինուած է, այդ հարցերը մեզ չեն հետաքրքրեր: Կարեւորն այն է որ Մարտիրոսեանի ընդունելի վարկածին համաձայն Մ. Ղրիմեցի զայն գրած է հայ ժողովուրդին տրամադրութիւնը բարձրացնելու եւ անոր ոգի ներշնչելու համար (անդ էջ 43): Հայ ժողովուրդին ծոցէն ելած են «քաջ»եր ու «բարի»ներ, հետեւաբար տոկալու է՝ նեղութիւններու եւ կուրծք տալու՝ դժուարու–

թիւններու: Այդ ժողովուրդէն դիւցազներ պիտի խզեն ստրկութեան շղթաները եւ ազատութեան շեփորները պիտի հնչեցնեն:

Մ. Ղրիմեցիի չափածոյ ժամանակագրութիւնը գնահատուած է. «Ճառըս գեղեցիկ» եւ «Գանձս առատ» (Հմմտ. վարը): Շատ պարզ, դիւրհասկնալի եւ սահուն լեզուով ու ոճով գրուած է: Բռնազբօսիկ քիչ տողեր կան:

Մարտիրոս Ղրիմեցիի չափածոյ այս ժամանակագրութեան հրատարակութեան եւ համեմատութեան համար նկատի կ'առնուին հետեւեալ Ձեռագիրներն ու Dulaurierի մասնական հրատարակութիւնը (Ռուբինեանց շրջանը):

Թ. 465 = A. (Թղ. 19բ—22ա). գրուած ԺԹ դարի մէջ (Հմմտ. Տաշեան Հ. Յ., Մայր ցուց. էջ 939–40): Այս եւ յաջորդը կը գտնուին Վիեն. Մխիթարեանց Մատենադարանին մէջ եւ ընտրուած է իբր բնագիր, զի յաջորդէն աւելի լաւ է:

Թ. 32 = B. (Թղ. 16ա—19ա). գրուած միեւնոյն շրջանին (Տաշեան, անդ էջ 181): Արտագրողը սխալելով տող ընդմէջ գրած եւ իրարու խառնած է, այսպէս՝

*Ազգս Հայոց զատ առանձին,*
*Որդիք Նոյի նահապետին։*
*Ծնանի Գամերն զԹորգոմ որդին։*

*Ապա չատ ուշ՝*

*է առուղին յարեթածին,*
*Յորմէ Գոմերն եւ մեր նախնին,*
*Եւ նա զՀայկն քաջն եւ արին։*

*Թ.* 1495 = C. (*Թղ.* 141*բ*—142*բ*). *այս եւ յաջորդ Ձեռագիրը պահուած են Երեւանի Մաշտոցի անուան Մատենադարանին մէջ։ Անոնց լուսանկարում-ները ու տառաքումները — խնդրանքներուս վրայ — կը պարտիմ նոյն Գրադարանին բարեացակամ տնօրէն դկտր. Լ. Խաչիկեանին, որուն կը յայտնեմ անկեղծ շնորհակա-լութիւնս։*

*Թ.* 737 (*է* 639) = D. (*Թղ.* 197*ա*—199*բ*). *այս Ձեռագրի նկատմամբ խօսած եւ ժամանակագրու-թենէն մասեր յառաջ բերած է Պրոֆ. Աշոտ Աբրահամեան (հմմտ. Գիտական նիւթերի հաւաքածոյ Թ.* 1, *Երեւան* 1941, *էջ* 212–13)*։ Այս եւ նախորդ Գրչագրին մէջ կան*

մարգպաններու, Բագրատունեաց եւ Ռուբինեանց թագաւորներու կառավարութեանց «ամ»երը (կա՛մ սկիզբը եւ կամ տողերու վրայ), մինչ Վիեննայի զոյգ Ձեռագիրները զանոնք չունին: Ասոնց հետեւելով զանոնք անտեսեցինք:

E. Dulaurier É. Հրատարակած է ժամանակագրութեան Կիլիկեան շրջանի մասը ի Recueil des historiens des croisades, Documents arméniens, Ա. հտր. Պարիս 1869, էջ 684–87:

Կարգ եւ թիւ թագաւորացն Հայոց ի Մարտիրոս վարդապետէ Ղրիմեցւոյ ոտանաւոր չափով:

*Ազգըս Հայոց զատ առանձին,*
*Է ըստուգիւ յաբեթածին:*
*Որդիք Նոյի նահապետին,*
*Յորմէ Գոմեր է մեր նախնին:*

*Ծնանի Գոմերն զԹորգոմ որդին,*
*Եւ նա զՀայկն քաջն եւ արին:*
*Մինըն սա էր յաշտարակին,*
*Եւ սատակող Բէլայ պղծին:*
*Յորոյ սերունդք Հայք անուանին,*

*Նախնոյն անուամբ յիշատակին:*
*Արամանեակ Հայկայ որդին,*

*Թագաւորաց Հ.* (այսքան) *ի Ղրիմեցւոյ Մարտիրոս վարդապետէ* B: *Կարգ թագաւորաց ազգիս Հայոց* (այսքան) C: *Կանգ* (բայց սրբագրուած՝ կարգ) *եւ թիւ թագաւորաց Հայոց ոդեալ ի Մարտիրոս վարդապետէ* D:

*Կարգ եւ թիւ թագաւորացն Հայոց արարեալ Մարտիրոս վարդապետի Ղրիմեցւոյ* E:

3 *որդւոյ* C:
4 *Գոմէր* A: *Գոմերն* CD:
5 *Գամերն* B: *Գոմեր* C:
6 *զՀայկ* CD:
7 *սայ* CD:
8 *սատակօղ* ACD *Բէլա* AC: *Բելայ* D:
10 *անուամբք* A:
11 *Հայկոյ՞* A:

Վասն այն Արմէնք մեզ տացին.
Եւ յետ սոցա ծնունդք սերին,
Դասեալ ի կարգ պատմաբանին.

Տեարք եւ իշխանք մեր յաշխարհին,
Քաջք եւ արիք պահողք ազգին.
Մինչ ի Պարոյրն, որ յառաջին,
Թագաւորաց զարմէն Հայկին.
Եւ այլք յոլովք յազգէ նորին,

Թագիւ պճնողք պատմաբանին.
Մինչեւ ի ցեղն Արշակունին,
ՅԱբրահամէ սերեալ զարմին.
Որք Քետուրայ ծննեալ ասին,
Երման ւԵկաան ,ւ այլն ի կարգին.

Ի յարեւելս գալուստ նոցին,
Ցայտնէ բուն գիրքն աստուածային.
Անդ աճեցեալ զարմբք նոցին,
Պարթեւական տոհմք անուանին.
Ուստի Արշակ վեհն առաջին,

12 Արմենք D.
13 Նորա B.
15 մերս CD. աշխարհին BCD.
16 պահօղք A.
17 առաջին BC.
18 Թագաւորեաց BC. զարմէ AD.
20 պճնօղք AD.
24 իմրայն սիկայն այլքն B. Երման՝ Եկաան այլն C. Եմրան Եկաան եւ այլն D.
25 Ի յարեւլն B. նորին B.
27 աճեցեալք CD.
28 տոհմ CD.

Թագաւորեաց յայնմ յաշխարհին։
Որով բոլոր ազգըք նոցին,
Արշակունիք վերաձայնին։
Եւ զքաղաքն Պահլ առին,
Պահլաւունիք այնու ասին։

ԶԱղեքսանդրեանսըն փախուցին,
Որք զարեհեան զահ նըստէին։
Յետ Արշակայ յաջորդ նըմին,
Է Արտաշէս որդի նորին։
ՅԱրտաշիսէ ծընեալ արին,

Զոր քաջ Արշակ անուանէին։
Սա յաւելու քան զառաջին,
Տիրէ բազմաց բաժնի մասին։
Վաղարշակայ եղբօր բաժին,
Տայ զՀայաստան բոլորովին։

Այս Վաղարշակ ծնանի զարին,
ԶԱրշակ երրորդ զարմանալին։

30 աշխարհին C:
31 ազգի՞ B:
32 վեայձայնին D:
33 Պալհ A: Պալհաւուին B:
34 Պալհաւունիք ACD: Պալհաւսանիք B:
35 ԶԱղէքսանդրեանսն ACD: ԶԱղեքսանդ-րեացն B:
36 նորին B: նստէն՞ D:
37 Արշակայն B:
39 ՅԱրտաշսի՞ է ծնեալ B: Արտաշխսէ A:
41 զառաջինն CD:
43 բաժինն C:
46 զԱրշակն BCD: երկրորդ B:

*Որ ըզՊոնտոս գերեաց յուժգին,*
*Կանգնեաց զարձան յեզր ծովին։*
*Եւ զայն ծակեալ Թափանցուցին,*

*Ձեռնոց արեամբ մխեալ տիգին։*
*Ազգն Յունաց երբ զայն տեսին*
*Իբր Աստուծոյ երկրպագին։*
*Իսկ Արտաշէս սորա որդին,*
*Առիւծատիպ քաջ պատանին,*

*Տիրէ բոլոր յարեւմտին,*
*Լուր պատմութեանց Պօլիկրատին։*
*Որ զԹագաւորն Եգիպտոսին*
*ՁԿրիւսոս* (ԲՆ. ԿՐԻԻՐՈՍ) *խանձեաց ի*
*տապակին։*
*Եւ զքարադէզ կարկառ սորին,*

*Զմութըն նետիւք միջօրէին։*
*Ապա Տիգրան սորա որդին,*
*Զայն որ կոչեն Տիգրան միջին։*

47 *ըզՊօնտոս* A: *ուժգին* C: *ուչգին* D:
48 *արձան* BCD:
49 *Թափանցային* CD:
50 *մխրեալ* A: *տիգիւն* CD:
51 *ազգքըն* C: *զազգըն* D:
52 *երբ* B: *երկիր պագին* C:
53 *նորա* B:
55 *արեւմտին* D:
58 *Կրիսոս* C:
59 *զքար դէզ* C: *զքարադէս* D: *կարկառք* BCD:
62 *կոչին* D:

Սա արշաւէ ի Պաղեստին,
Յաղթահարէ զՀռոմայեցին։

Իսկ Արտաւազդ որդի սորին,
Անբաղդ յաջորդ հօրըն գահին։
Որ ծառայէր որովայնին,
Եւ նախատինք իւրոյ ազգին։
Ապա Արջամ եղբայր նորին,

Թագաւորէ նորա բաժնին։
Աբգարխոս սորա որդին,
Մեծահաւատ զարմանալին։
Յորոյ աւուր մեզ լոյս ծագին,
Ծնընդեամբ մերոյ օրհնեալ Փրկչին։

Իսկ անանունն Աբգարածին,
Յիշատակաց ոչ արժանին։
Իսկ Սանատրուկ նըման նըմին,
Մի՛ յիշեսցի բարւոյ մասին։
Նահատակող Թադէոսին,

64 Հռոմայեցին AD։
66 անբախդ D։
67 յորովանին AC։
68 յազգին D։
69 Արշակ B։ եղբայրն C։
70 բաժին B։
71 Արկարխոս A։
73 մեծ լոյս B։ յետոյ աւուր մեզ D։
74 օրհնեալ մերոյ C։
75 Արկարածին A։ Այն անուն B ան անունն CD։
76 յարժանին D։
77 Եւ Սանատրուկ BC։
79 նահատակօղ ACD։ Թաթէոսին A։

Եւ Սանդխտոյ իւր զաւակին։
Ապա Երուանդ Արշակունին,
Լիրր հերատունկ կնոջ որդին։
Ցոյժ չարակնի զաս աւէին,
Ցորմէ արձանք պատառէին։

Իսկ Արտաշէսն որ յետ նորին,
Սանատրկոյ կրտսեր որդին։
Սա էր շինողն Արտաշատին,
Որ զՍաթենիկն ունէր տիկին։
Եւ յետ մահուան Արտաշէսին,

Գայ Արտաւազդ չիթար որդին,
Սակաւ աւուրս տիրէ զահին,
Խելացընորն եւ եղկելին։
Ապա Տիրան եղբայր նորին,
Այն որ մընաց ներքոյ հիւսին։

Եւ յետ սորա Տիգրան յետին,
Նա եւս որդի Արտաշէսին,
Ըզսա Վաղարշ իւր զուտ որդին,

81 Երվանդ A։ Երեւանդ B։ Երւանդ C։
83 զայս B։ չար ակնի CD։
86 Սանատրրկ C։ Սանատրրկոյ D։
87 չինօղն AD։ աշտարակին B։
88 զԱսթէնիկն A։ զԱսթենիկն B։ ունէր որ-
դին B։
89 Արտաշիսին BCD։
90 զա D։ ջիդար B։ չիդար CD։
95 Տիգրանն C։
96 Արտաշիսին BCD։

*Պայազատեալ Նըստի գահին :*
*Այս Խոսրով* (ԲԱ. ԽՈՐՍՈՅ) *որդի սորին ,*

*Որ յԱնակայ սպանաւ յորսին :*
*Եւ անդանօր Հայք անտիրին ,*
*Կոխան ազգին Պարսից լինին :*
*Մինչ ի գալուստ որդւոյ նորին ,*
*Տըրդատ անուն յաղթող կայսրին :*

*Յետ Տրդատայ Խոսրով որդին ,*
*Այս Տիրան ծնունդ նորին :*
*Զկնի Արշակ հաւան չարին ,*
*Որդին իւր Պապ ախտամոլին :*
*Եւ Վարազդատ Արշակունին ,*

*Եփրատավազ քաջ պատանին :*
*Այս Արշակ Պապայ որդին ,*
*Եւ Վաղարշակ եղբայր նորին :*

97—98 *Վաղարշակ* D: *Նատոյց* A:
100 *Անակայ* A:
101 *անտանօր* ACD:
103 *ի գալուստն* BCD:
104 *յաղթօղ* A:
105 *Տրդատա* D: *Խօրսոփ* A:
106 *ծնունծք* B:
107 *Հարին* A:
108 *որդի* B:
110 *Եփրաթայ վազ* A: *Ցեփրատայ փող* B: *Ցեփրատավազ* CD:
111 *Պապա* CD:

*Ոմըն Խոսրով զկնի սորին ,*
*Վռամշապուհն յետ Խոսրովին*

*Պարսիկ Շապուհն որ ի կարգին ,*
*Եւ Արտաշէսն որ հուսկ յետին :*
*Յայսըմ վայրի միջոյ բանին ,*
*Ցեղն արքայից Արշակունին :*
*Անտիրացեալ Հայոց ազգին ,*

*Ողորմելի կենօք վարին :*
*Զրաւ Արշակունեաց Թագաւորացն եւ*
*Նստին իշխանք :*
*Երեք տասան ամք անտիրին ,*
*Յայլասեռից իշխեալք լինին ,*

*Որպէս հնոյն Իսրայէլին ,*
*Դատաւորաց ժամանակին :*
*Յետ այնորիկ միաբանին*

113 *Խորսոփ* A : *նորին* D : *սոցին* C :
114 *Վռամ շապուհն* ACD : *Խորսոփին* A :
117 *այսմ* A : *միջոց* B : *բառին* D :
118 *ցեղք* CD : *արքայիցն* CD :
119 *անտիրացեալք* CD :
121 *Ի զրաւ Արշակունեաց Թագաւորաց* CD :
122 *իշխանին* B :
123 *ամ* BCD : *իշխեալ* C :
124 *այլասեռից* B : *իշխեալ* CD :

Իշխանազունք Հայոց ազգին,
Եւ սահմանեն մարզպանութիւն,

Վարդըն Պարոն Նըստի նախկին,
Պարոն Մանդնոս (ԲԱ· ՄԱՐԿՈՍ) զկնի նորին,
Պարոն Արշամն յաջորդ նմին։
Պարոն Վահանն քաջն եւ արին,
Որ էր սա հայր Վարդ պատրկին։

Վարդն պատրիկ զաւող Ցունին,
Պարոն Դուիթն յաջորդ նորին։
Թէոդորոս ոմն յետ Դուիթին,
Եւ Համազասպն որ ի կարգին։
Պարոն Մէժէժըն յետ նորին,

Պարոն Ներսէհն յաջորդ գահին։
Պարոն Աշոտն Բագրատունին,
Պարոն Սըմբատ զարմէ նորին։

128 Հայոցս C։
129 հնար զսպանութիւն B։
131 Մանկոս BCD։
133 Վահան CD։
135 Վարդն (Վարդա՞ն) A։ զաւող A։ զա·ոզն C։
զաւօղն D։
136 յաջդէն Իին(՞) D։
139 Մժժեէն B։
140 Ներսեհն B։ Ներսեհ CD։
141 Աշոտ CD։
142 Սմբատն B։

*Անտիրանան դարձեալ կըրկին,*
*Ցխումն եւ չորս ամ վերստին:*

*Կոխան ազգաց բազմաց լինին,*
*Հագարացւոց, Պարսից 'ւ Ցունին:*
*Ցետ այսորիկ դարձ վերստին,*
*Թագաւորաց մերոց լինին:*
*Նախաժառանգ այնըմ դահին,*

*Աշոտ ազգաւ Բագրատունին:*
*Արքունական տեղ պատրաստին,*
*Ի բուն Հայոց բաժնի մասին:*
*Շիրակվանայ մեծի դաշտին,*
*Քաղաքն Անի յեղըր գետին:*

*Ցետ Աշոտայ Սըմբատ արին,*
*Ցաջորդն արժան հօրն դահին:*
*Ցետ Սըմբատայ Աշոտ կըրկին,*
*Որդիք զՀարք ժառանգէին:*
*Սըմբատ երկրորդ՝ Աշոտոյ որդին,*

143 *անտիրական* B:
145 *ազգացն* B:
146 *Հագարացոց* A: *Հաքարացւոց* C: *Հագա-*
*րացւոցն* B 'ւ չունի C:
147 *այնորիկ* B:
149 *նախաժառագս* A: *այնմ* A: *յայնըմ* BD:
153 *Շիրակ վանայ* ABC:
155 *Աշոտոյ* CD: *Սմբատն* BCD:
156 *աջորդ* CD:
157 *Սըմբատա* D:
158 *զՀայրք* D:
159 *Սմբատն* BCD: *Աշոտոյ* BD: *Աշոտ* A:

Կրկին Աշոտ ըստ որում ասին:
Դարձեալ Սմբատ ոմն ի կարգին,
Ապա Աշոտ որդի նորին:
Յետոյ Աբաս եղբայր սորին,
Աշոտ որդի սոյն Աբասին:

Դարձեալ Սմբատ, որ է վերջին,
Զոր Շահըն չահ անուանէին:
Գագիկ եղբայր Շահըն չահին,
Եւ ըստ կարգի որդիք նորին:
Երկու եղբայրք ի միասին,

Որք Յովհաննէս՝ Աշոտ կոչին:
Դարձեալ Գագիկ Աշոտոյ որդին,
Թագաւորացն եղեալ վերջին:
Իմաստասէր յոյժ կորովին,
Կրթեալ ուսմամբ յունականին:

Սա մեռանի կըսկծագին,
Ձեռամբ դժնեայ Յունաց ազգին:

163 Աբբաս A: Յետոյ Աբաս եղբայր սորա որ-
164 Աբբասին A: դին D:
165 է չունի D:
166 չահնչահ B: Շահան չահ C:
167 Շահընչահին B: Շահան չահին C: Շահն-
չահին D:
169 եղբայր B: եղբարք C:
170 Յօհաննէս A: Յովաննէս D:
171 Աշոտոյ B: Աշոտ որդին D:
173 իմաստասէրն B:
174 յուսմամբ A:
176 դժնեա CD: Յունույ(*) D:

*Մինչեւ ցայս վայր տեւեալ մնային,*
*Բագրատունեաց ազգն, որ ասին:*
*Ցազգէն Հրէից գոլըն սոցին,*

*Պատմէ Մովսէս Խորենացին:*
*Քանզի Տիգրան արքայն միջին,*
*Որդի քաջին Արտաշէսին,*
*Սա արշաւէ ի Պաղեստին,*
*Գերէ գրաւումս Հրէից ազգին,*

*Բագրատունիքն անտի սերին,*
*Թագաւորացն մերոց յարին:*
*Ուստի նշանք յայտնի ցեղին,*
*Որ զկերպս անուանցն ոչ փոխեցին:*
*Շամբատն՝ Սմբատ անուանեցին,*

*զԱսուտն՝ Աշոտ յարմարեցին:*
*Եւ յետ մահուն Գագկայ վեհին,*

177 *տվեալ մնային* D: *մնացին* B:
178 *ազգքն* C:
180 *Զմբատն* A:
181 *Տիքրան* C:
182 *Արտաշխսին* BCD:
183 *նա արշաւէ* C:
184 *ի Հրէից* D:
185 *Բագրատունիք* CD:
186 *Թագաւորաց* C: *մեր* AD:
187 *նշանքն* BCD: *յայտ է* C:
188 *ոչ կորուսին* C:
189 *ԶՇամբատ* C: *զՇամբատն* D:
190 *զԱսուդն* CD: *յԱշոտ* B: *յարմարճայնին* CD:
191 *մահուան* BCDE: *Գագկա* C: *Գագկեա* D:
— *վհին* B:

Թագք արքայից մերոց բառնին։
Անտիրանայ գահն նոցին,
Որ ի յԱնի նախապատմին։

Պարոն Ռուբէն զարմէ Գագկին,
Զիշխանութիւն պահէ ազգին։
Զուեալ յԱնւոյ տարադնային,
Գայ ի յաշխարհն Կիլիկէին։
Տիրէ տեղւոյն իշխանային,

ԶՑոյնս հալածէ ի տոյժ Գագկին։
Կրրկին տասնեակ ամք զըրաւին,
Փոխի յաստեացս քաջ եւ արին։
Ցետոյ որդին իւր Կոստանդին,
Լինի ժառանգ հօրըն գահին։

Ապա Թորոս քաջն եւ բարին,
Նոյն Կոստանդեայ ծընեալ որդին,

192 Թագն BE։
195 Պարօն B։ Ռուբէն E։
197 պարագային BE։
198 գալ A։ ի յաշխարհ CD։ Կիլէկէին C։
199 տեղոյն C։
200 ի տուժ CD։
201 զրուին B։
202 քաջն BC։
203 յետ իւր որդին իւր BCDE։
204 նոյն Կոստանդին B։ Զուճի՝ լինի ժառանգ
հօրն գահին E։
206 Կոստանդեա C։ Կոստանդիա D։ Կոստան-
դին E։

*Յետ Թորոսի՝ եղբայր սորին,*
*Զայն որ Լեւոն (ՌԵ. ԼԻՕՆ) անձայնէին.*
*Ծընուընդք Լեւոնի Թորոս կըկին,*

*Եւ Ստեփանէ եղբայր նորին.*
*Պարոն Մըլեհն որ յետ սոցին,*
*Երեք որդիքն խակ Լեւոնին.*
*Եւ յետ սոցա ժառանգ գահին,*
*Ռուբէն՝ որդի Ստեփանին.*

*Յետ Ռուբէնի եղբայր նորին,*
*Լեւոն Առիւծ բազմի գահին.*
*Թագ ընկալեալ կայսերց կըկին,*
*Գերազանցեաց յամենեսին.*
*Ապա Ֆիլիպ փեսայ նորին,*

208 *Լէօն* (միշտ) AD: *Լէոն* միշտ C:
209 *Լէօնի* (միշտ) AD: (*Լէոնի* (միշտ) C: *ծնունդ* (*Լեւոնի*) BCDE:
210 *Ստփանէ* A: (Թողուցինf, զի Եւ Ստեփանէ *չափէն աւելի կ'ըլլայ*): *Ստեփանէ* B: *Եւ Ստէփանէ* C, *Եւ Ստեփանէ* D: *Ստե-փանէ* E:
211 *Մլեհ* E:
212 *երեքն* CD:
213 *ց(ո)ցա(՞)* D:
214 *Սփանէին* A: *Ստէփանէին* C: *Ստեփանէին* E, *Ստեփանէին* D:
215 *Ռուբենին* B: *Ռուբենի* CD: *Ռուբէն* E:
216 *առիւծն* BDE: *Լէոնն առիւծ* C:
218 *գերազանցեալ* BE:
219 *փեսա* C:

*Բայց կարճակեաց գնա ասացին։*
*Մեծըն Հեթում իշխէ գահին,*
*Զապէլ դըշխոյն առեալ իւր կին։*
*Ցետոյ Լեւոն Հեթմոյ որդին,*
*Զոր յԸնգիպտոս գերի տարին։*

*Ուստի դարձեալ իշխեաց գահին,*
*Ցետոյ Հեթում իւր մեծ որդին։*
*Քանզի զՀեթումս այս կորովին,*
*Ցոյժ երկիւղած գըրեն ի ճառին։*
*Նեղեալ յեղբարցըն սաստկագին,*

*Թողու զփառսն իւր կամովին։*
*Նըստի Սըմբատ եղբայր Նորին,*
*Ցետ Սըմբատայ միւս Կոստանդին։*
*Եւ ապա միւս եղբայր Օշին,*
*Ցորոց բուն ազգըն վըրդովին։*

*Զմեծըն Հեթում հարկեն կըրկին,*
*Նըստուցանեն նախնի գահին։*

220 *կարճկեաց* B:
221 *Մեծն* A: *Հեթոմ*(°) D:
222 *զԱպէլ* B:
223 *Լեոն* (միշտ) B: *Լէոն* (միշտ) C: *Լէօն* (միշտ) AD:
224 *Եգիպտոս* D:
233 *եղբայրն* C, *եղբայր Նորին* (չիք Օշին) D:
234 *որոց* A: *ազգքըն* CD:
235 *զմեծ* B:
236 *նստուցանել* E:

*Եւ յետ երկուց լըրման ամին,*
*Փոխի յաստեացս երանելին։*
*Զկնի Լեւոն ոմն ազգային,*

*Ապա եղբայրն իւր Կոստանդին։*
*Ապա Լեւոն որդի Օշնին,*
*Զկնի միմեանց փոխանցէին։*
*Պարոն ծուան հօր քըւերորդին*
*Նախասացեալըն Լեւոնին։*

*Եւ կիտ եղբայրըն ծուանին,*
*Սակաւակեացք իսկ երկոքին։*
*Քանզի սոցունց զօրքըն զըզուին,*
*Յորոց մահուամբ միջոյ բառնին։*
*Զկոստանդին ազգ Լեւոնին,*

*Կերպ արքայի բերեալ եդին։*
*Յետ Կոստանդեայ որ հուսկ յետին,*

241 *Յօշնին* A: *Այլ եւ* BCDE: *Լիոն որդի Յօշ-*
*նին* B:
242 *փոխ անձէին* C: *անձնէին* D: *փոխանէին* E:
243 *ծըւանն* A: *Հօրքուերորդին* E: *Հօր քուեր*
*որդին* D:
244 *Առաստացեալն* A: *աստցեալն* D: *Լէոնին*
(միշտ) C:
245 *կիտ* (չունի) B: *ծուվանին* C: *Եւ կիտ եղ-*
*բայր ծուանին* չունի E. ունի՝ *եւ յետ*
*եղբայրըն ծիւանին* (E):
247 *զզուէն* BE:
248 *մահվամբ* A: *մհամամբ* D:
249 *ոմն ազգ* BCDE:
251 *Կոստանդեա* D:

Լեւոն Արքայ ողորմելին։
Տիրեալ ամխոըս տասն եւ մին,
Կորոյս ըղթագն ընդ աթոռին։

Քանզի Սուլթանն Եգիպտոսին,
Եկեալ գերեաց զամենեսին։
Զպարոնն եւ զիւրսն ի միասին,
Եւ զթագուհի մայրըս Նոցին։
Առ որ խըղճեալ բըռնաւորին,

Թողու ազատ զայն թագուհին։
Աւէ գընալ ուր եւ կամին,
Իսկ Նա դիմէ ի Պաղեստին։
Հասնի զըրաւ կենաց Նորին,
ՅԵրուսաղէմ սուրբ քաղաքին։

Թաղի ընդ սեամբ սուրբ տաճարին,
Հայոց ազգի սուրբ Աթոռին։
Ի յութ հարիւր Հայոց թուին,
Քսանուերեք յաւելորդին։
Յազգէն դըժնեայ հագարածին,

254 զթագն ընդ Աթոռին A: Ըստ B:
255 սուլտանն BC: յԵգիպտոսին A:
257 միասին A:
258 մօրու նոցին D: մօրու նորին BC: զթագու-հին Մօրու նորին E: Մարիուն թագու-հին է (ծն.):
261 կամեն D:
265 սեան A:
266 Հայոցս CD:
267 Ի ութ C: թըվին D:
268 աւելորդին B: քսան ւերեք աւելորդին DE:
269 յԱգարածին B: դժնեա Հաքարածին C:

*Զգաստըն բաժակըս զայս արբին :*
*Եւ աստանօր բանքըս վերջին ,*
*Պատմաբանեալքըս զըրաւին :*
*Արքայք եւ պետք մեր ըսպառին ,*
*Իշխանազունք միջոյ բառնին :*

*Ցեղք հայկազնիցըս վըրդովին ,*
*Եւ աստ եւ անդ վըտարանդին :*
*Ոմանք Պարսից մասին դիպին ,*
*Ծառայօրէն յայնց նըուաճին :*
*Եւ կէսք Թուրքաց գոռող ազգին ,*

*Լեալ հարկատու հալեալ մաշին :*
*Յօտարացեղ ազանց նեղին ,*
*Ըստ Ներսէսի սըրբոյ բանին :*
*Բայց գոհութիւն տացուք Փըրկչին ,*
*Հօր եւ Հոգւոյ շնորհազարդին :*

*Զի եմք ծընունդք աւազանին ,*
*Իերկրպագուք սըրբոյ խաչին :*
*Յինէն ընծայ այս քեզ , եղբայր ,*

273 *սպանին* E :
274 տողք 273 եւ 274 տեղափոխուած *E* :
275 *Տեղք* E :
278 *անց* BE : *նուաճին* CD : *նըուաճին* E :
279 *գոռ* A :
280 *մաչին*(°) D :
282 *Ներսիսի* BE :
285 *ծնունդ* CDE :
286 *Երկրպագուք* CD :

*Մերոց նախնեացըս վէպ եւ ճառ:*
*Մարտիրոսէս յողնաթըշուառ,*

*Շըրջաբերեալ թիւս է ԾԻԾԱՌ:*
*Ուղղաչաւիղ նախնեաց մեր վէպ,*
*Եւ օրինակ մեզ անվըրէպ:*
*Դիր զայս ունիլ յաչաց հանդէպ*
*Եւ սփոփիլ սովաւ է դէպ:*

*Սա է արժան եւ կոթողակ,*
*Եւ հաւաստի պատմող պըրակ:*
*Սկսեալ պատմէ մերս հեղինակ,*
*ՅԱրբեթական կոչէ զաւակ:*
*Զընթացս նախնեաց մեր բարեմիտ,*

*Ճըշգրտավէպ եւ ճըշմարիտ:*
*Ցենեալ ի մի գէտ մարգարիտ,*
*Զի մի մնասցուք մեք կարճամիտ:*
*Արդ Մարտիրոս Պետըն երջանիկ,*
*Գըրեաց զայս ճառըս գեղեցիկ:*

288 *մերոյ* D:

289 *Մարտիրոսէ* BE: *յողն թշուառ* B: *յոքնա թշուառ* C:

290 *թիւն է* BE: Զունին ասկէ վերջ BCDE:

296 *պատմօղ* A:

303 Այս տողէն մինչեւ վերջը հրատարակուած Հ. Տաշեանէ՝ հմմտ. Մայր ցուցակ էջ 940, ուր տող 317՝ ազգին: Հմմտ. անդ՝ էջ 181:

*Տեսեալ հիքոյս որ Թըշուառիկ,*
*Գաղափարեալ տենչիւ սաստիկ:*
*Ստանալ յանձին զայս գանձս առատ,*
*Եփրեմ չնչինս, որ ապիրատ:*
*Արեղայէս կալուք խըրատ,*

*Ծառիցս եւ զայս մի Թողուք զատ:*
*Գաղափարել որք կամիցին,*
*Սակաւիկ բանս կից ունիցին:*
*Բայց որք ըզսա փեռեկտիցին,*
*Կրկին կենաց զուրկ եղիցին:*

*Ի ժամանակս որ վըշտապատ,*
*Ազգիւ վարեալ ի խորխորատ:*
*Նուաճեալ յազգացն որ անհաւատ,*
*Վասն այն գրեալ սատ զայս դըւատ:*
*Գրիւ սատացայ զսա վերջին,*

*Կիրակոս Վեհս իմոյ անձին,*
*Գրեցուցեալ ձեռամբ դպրին*
*Ստեփաննոս սարկաւագին:*

(305, Տաշեան, Մայր ցուցակ. էջ 941՝ *տեսիլ*):
313 *փեռեկտիցեն* A: